# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ

# ՀԱՅՈՑ

Gaterchian, Hovsep
Patmutiun matenagrutean..

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ
# ՀԱՅՈՑ

ԳՐԵՑ

Հ. ՅՈՎՍԷՓ Վ. ԳԱԹԸՐՃԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ





ՎԻԷՆՆԱ

ՊԱՀՑՊԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԸ

1851 ԹՎ.

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ

## ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ

ՄԱՐԴՈՒ մը, ազգի մը կամ բոլոր մարդկութեան մտաւոր կենացը ձայնաւոր կամ գրաւոր յիշատակարաններուն գումարը՝ նոյն մարդուն կամ ազգին կամ ընդհանրապէս մարդկային ազգի մատենագրութիւնը կամ գրագիտութիւնը կ'անուանենք։

Այս անհատական, մասնաւոր եւ ընդհանուր մատենագրութիւնը հարկաւ իր չափին համեմատ պատմութիւն մ'ալ ունի։ Ուսումը՝ որչափ որ ինք իր կողմանէ անփոփոխ ու միակերպ բան ըլլայ, որովհետեւ մարդուս ձրի եւ անաշխատ դրանց տրուած բան չէ, հապա մարդիկ ալ ճշմարտութիւն որսալու համար գիտութեան գեղեցիկ ցանցը տաժանմամբ ու կամաց կամաց հիւսած են ու պիտ'որ հիւսեն, անոր համար մատենագրութեան՝ թէ ըստ ժամանակի եւ թէ ըստ տեղւոյ՝ փոփոխութեան ու պէսպիսութեան տակ իյնալը՝ անհրաժեշտ հարկ մըն է։

Փոփոխութիւնն որ ժամանակաւ կ'ըլլայ, ուսման կամ մատենագրութեան՝ կամ Յառաջադիմութիւնը կամ Անկումն է, ըստ որում անոր փոփոխութիւնը կամ ի լաւ կամ ի վատթար կ'ըլլայ։ Պէսպիսութիւնն՝ որ մատենագրաց ազգային կամ տեղական տարբերութենէն կամ պարագաներէն շատ կախուած է, ուսման ու մատենագրութեան հոս կամ հոն, աս կամ ան

ատեն ունեցած սեպհական նկարագիրը կը ցուցնէ․ օրինակի աղագաւ՝ արեւելեան ու արեւմտեան, յունական կամ հռոմէական մատենագրութեան սեպհական յատկութիւնները եւ այլն։

Ուրեմն ինչպէս ընդհանրապէս պատմութիւնը՝ ասանկ ալ մատենագրութեան պատմութիւնը՝ թէ Ժամանակագրութիւն մը եւ թէ Աշխարհագրութիւն մը կամ աւելի ճշդիւ՝ Ազգագրութիւն, այս ինքն՝ զանազան ազգային նկարագիրներ պիտ'որ ունենայ։ Ո՞վ կրնայ ժխտել՝ որ աս երկուքն ալ (այս ինքն՝ մատենագրութեան թէ ժամանակներու եւ թէ նկարագիրներու զանազանութիւնը) ինչպէս բոլոր մարդկութեան վրայ ընդհանրապէս, ասանկ ալ ի մասնաւորի նոյն մարդկութեան մասի մը (ազգի մը) վրայ՝ բոլոր պատմութեան ընթացից հետ կապուած չըլլայ։ Որովհետեւ՝ մէկ կողմանէ մատենագրութեան յառաջադիմութիւնն ու անկումը, մէկալ կողմանէ ալ աս կամ ան կերպն ունենալը՝ նոյն ազգին քաղաքային անցքերէն ու բարոյականութենէն կախուած է, անոնց հետ ուղիղ համեմատութեան մէջ է. ասոր համար աղէկ ըսուած է որ ազգի մը պատմութեան ծանրաչափն՝ իր մատենագրութիւնն է։ Ասոր ամենէն գեղեցիկ ու համոզող օրինակը՝ յունական մատենագրութիւնն է, որուն քայլերը միշտ Յունաց քաղաքային պատմութեան հետ հաւասար կը շարժին[1]։

Մեր ազգային մատենագրութիւնն աս բանիս մէջ բացառութիւն մը չէր կրնար ըլլալ։ Ուստի թէ որ աս գաղափարով մեր բոլոր մատենագրութեան վրայ աչքերնիս պտըտցընենք, 2000 տարուան ուսումնականութիւննիս պէտք է որ զանազան պատճառախնդիր[2]-ժամանակագրական բաժանմունք ունենայ, որն որ տախտակով մը կրնանք երեւցընել։

1 Տես Տիեզ․ Պատմ․ Հատ․ Ա․ էջ 409—448 եւ 474—477։
2 Pragmatique.

ԱՌԱՋԻՆ ՄԻՋՈՑ. *Քրիստոնէութենէ առաջ* (150 *նախ քան զՔր.* — 305 *յետ Քր.*)։

1. *Անգիր*։

2. *Գրաւոր*։

ԵՐԿՐՈՐԴ ՄԻՋՈՑ. *Քրիստոնէութենէ ետքը* (305—1850)։ *Ասոր տակը*՝

Առաջին Շրջան. *Հայերէն գրութենէ առաջ կամ օտար լեզուաւ ու գրով գրուած* (305—406)։

Երկրորդ Շրջան. *Հայերէն գրութեամբ ու լեզուով* (406—1850)։

Ա. *Յունական քրիստոնէական մատենագրութեան ազդեցութեան տակ* (406—1300)։

1. *Ուղղակի յունական մատենագրութեան ազդեցութեան տակ, այս ինքն՝ յունական լեզուաւ ու գիտութեամբ* (406—500)։ Առաջին Թարգմանութեան դարն։ Ասոր՝

2. *Անմատենագրութեան ժամանակ մը* (500—650) *յաջորդելէն ետքը*՝

3. *Երկրորդ յունարէն լեզուագիտութիւն մ՚ալ* (650—750), *այս ինքն՝ Սիւնեաց դպրոցին ժամանակները կու գայ*։ Երկրորդ Թարգմանութեան դարն։

4. *Անուղղակի* (*թարգմանութեանց միջնորդով միայն*) *յունական մատենագրութեան տակ* (750—1050)։

5. *Երրորդ յունարէն լեզուագիտութիւն մ՚ալ* (1050—1250)։ Երրորդ Թարգմանութեան դարն։

6. *Նորէն միայն միջնորդաբար յունական մատենագրութեան ազդեցութեան տակ* (1250—1300)։

Բ. *Հռոմէական կամ ճշդիւ՝ Գերմանական*[1] -

1 *Աս անունը հոս հնագիտական նշանակութեամբն է, այս ինքն Գերման ըսելով հիմակուան՝ Եւրոպայի կենդրոնը բնա-*

1 *

քրիստոնէական մատենագրութեան ազդեցութեան տակ (1300—1850)։

1. ՄԻՋԻՆ ժամանակի մատենագրութեան ազդեցութեամբ (1300—1600)։

2. ՆՈՐ ժամանակի մատենագրութեան ազդեցութեամբ (1600—1850)։

ա. Աւելի Իտալական, ետքերը՝ գաղիական մատենագրութեան ազդեցութեամբ (1600—1830 կամ '40)

բ. Կէս մը գաղիական, կէս մը գերմանական եւ մասամբ իմն անգղիական ազդեցութեամբ (1830 կամ 1840—1850 . . .)։

Այս բաժանմանց վրայ քանի մը դիտելու բան կայ։

1. Ինչպէս կը տեսնուի՝ այս բաժանումները ժամանակի չափով չեն, կամ ժամանակի հաւասար ընդարձակութիւններ փնտռուած չեն եւ ոչ ալ նոյն ժամանակներուն մէջ գրուածներուն շատութիւնն ու քիչութիւնը դիտուած է, հապա նոյն նշանակուած ժամանակներուն մէջ եղած գրուածներուն ունեցած ընդհանուր նման յատկութիւններն՝ որոշման ու բաժանման հիմն ու պատճառ տուած են։ Պատմութեան մէջ հարիւրական տարւոյ կամ դար դար բաժանում ընելու սովորութեան անբնական բան ըլլալը՝ շատոնց կող ազգերը մինակ չենք իմանար. հապա նաեւ Անգղիացւոց Գաղղիացւոց, Սպանիացւոց, նոյն իսկ Իտալացւոց ըստ մեծի մասին հասարակաց ընդհանուր պատմական անուանն ալ է։ Որովհետեւ պատմութիւնը ցուցուցած է որ բուն տեղացիները զանազան Գերման ազգերու մէջ ընկղմած են. Հին Սպանիացիք կամ Վասկոնները եւ այլն՝ Սուեւներու եւ արեւմտեան Գոթացւոց հետ խառնուելով, Հին Գաղիացիք՝ Փրանկաց ու արեւմտեան Գոթաց, Բրիտանացիք՝ Սաքսոններուն ու Նորմաններուն հետ, Իտալացիք կամ Հին Հռոմայեցիք՝ ըստ մասին արեւելեան Գոթացւոց, Լոնգոբարդացւոց եւ ըստ մասին Նորմաններու հետ, որոնց ամէնն ալ մէյ մէկ կամ զուտ կամ խառն Գերման ցեղեր են։

ճանչցուած է։ Բայց այն յատկութիւններն՝ որոնք սա բաժանմանց հիմն եղած ու մինակ ընդհանրապէս հոս յիշուած են, իւրաքանչիւր ժամանակաց վրայ առանձին խօսելու ատեննիս՝ աւելի մեկնութիւն ու բացայայտութիւն կ'առնուն։

2. Թէպէտ ազգի մը պատմութիւնը կամ իւրաքանչիւր ժամանակուան քաղաքային վիճակը՝ կարծես թէ իր մասնաւոր յիշատակարաններուն վրայ կը նկարուի, եւ ընդհանրապէս առանց ըլլալը մէկը տարակուսի տակ չիկրնար ձգել, սակայն սա ալ միշտ պէտ'որ դիտուի որ ազգի մը եւ ի մասնաւորի ազգերնուս քաղաքային վիճակին յանկարծական փոփոխումը՝ անմիջապէս մատենագրութեան մէջ ալ յեղափոխութիւն մը միշտ չիբերեր։ Աս շատ նիւթապէս մտածել կ'ըլլար։ Շատ անգամ հին կրթութեան ու խելաց մարդիկը՝ նոր փոփոխութեան մէջն ալ կեանք ու գործողութիւն կ'ունենան։ Շատ հեղ ինչպէս ապագան՝ նոյնպէս անցեալը դեռ ներկային մէջ կենդանի է, թէպէտ վերջին շնչովը։ Մէկէն մէկալին՝ անցում մը, կամուրջ մը պէտք է դնել. ոստումը միշտ անբնական է։ Անոր համար՝ դրուած թուականներն ամէն դիպուածի մէջ ուսողական (մաթեմաթիքական) ճշդութեամբ մը բռնելու չէ։

3. Աս բաժանումները մատենագրութեան ընդհանուր բաժանումներն են, այս ինքն՝ ընդհանուր ուսման ընթացքին նայելով դրուած են, ուստի եւ սա կամ այն մասնաւոր ուսման վիճակին նայելով՝ կրնայ ընդհանրէն բացառութիւն մ'ըլլալ։ Կրնայ, օրինակի աղագաւ, հայերէն լեզուի պատմութիւնը՝ մատենագրութեան ընթացքին ժամանակներէն քիչ շատ հեռացող ժամանակներ ունենալ, մէկուն կատարելութիւնը մէկալին անկատարութեան ատենն ըլլալ։ Բայց հարկաւ աս զարտուղութիւնն ալ մատենագրական պատմութեան մէջ անյիշատակ չիմնար։

4. Աս ժամանակագրական բաժանմանց ամէն մէկը՝ նիւթի կողմանէ ուրիշ բաժանումներ ալ կ'ունենայ։ Օրինակի աղագաւ՝ վերջի ժամանակուան Հայերէն մատենագրութեան վրայ խօսել ուզողը կրնայ բոլոր մատենագրութիւննիս՝

Ա. Բանասիրական-պատմական,

Բ. Ուսողական-բնական,

Փ. Փիլիսոփայական-աստուածաբանական

գլխաւոր ճիւղերու բաժնել, եւ ետքն ալ ասոնց ամէն մէկուն տակ աւելի մասնաւոր խորագիրներ բանալ։ Որոշեալ ժամանակի մը գրուածոց նիւթերուն երեւելի զանազանութիւնները՝ Հարկաւ աս բաժանման չափն ալ կ'որոշեն. անանկ որ՝ դարձեալ շատ նիւթական բան կ'ըլլար որ ամէն նշանակուած ժամանակներուն Համար Հաւասար ու միակերպ նիւթոց ցանկ մը առջեւնիս առնելով՝ ամէն ժամանակի մէջ նոյներուն Համեմատ գրուածք փնտռէինք կամ պաՀանջէինք, չմտածելով որ ամէն ժամանակ՝ ինչպէս իր սիրական կամ Հարկաւոր՝ ասանկ ալ անփոյթ ըրած ուսումն ունեցած է։ Ամէն մէկ ժամանակին վրայ մէկիկ մէկիկ խօսած ատեննիս՝ Հարկաւ աս նիւթերու բաժանման ալ մտադիր ըլլալու ենք։

5. Բոլոր մատենագրութիւննիս աս կարգերու մէջ զետեղելու ատեն՝ ամէն մէկ գիրք կամ գրուածք երեք յարաբերութիւն կամ Հայեցում կ'ունենայ։ Ա. Իր մատենագրին, Բ. Իրմէ առջի ու իրմէ ետքի ազգային մատենագրութեան, ու Գ. ԸնդՀանուր մատենագրութեան նկատմամբ։ ՈրովՀետեւ նախ՝ մանաւանդ Հեղինակութեան վերաբերած նիւթերու մէջ՝ մատենագրին անձնական որպիսութեան տեղեկութիւնն անՀրաժեշտ Հարկաւոր է։ Երկրորդ՝ ամէն գիրք իրմէ առջիններէն ինչ ազդեցութիւն կամ սկիզբ ընդունած եւ իրմէ վերջիններուն ինչ ազդեցութիւն ըրած ըլլալը գիտնալով՝ մէկ կողմանէ գրքին ներքին

որպիսութիւնը, եւ մէկալ կողմանէ ընդունելութիւնը կամ մերժումը կ'իմանանք։ Երրորդ՝ դիրք մը ընդհանուր դրագիտութեան կամ ուսումնականութեան հետ համեմատելով՝ գործքին ներքին յարգը կ'որոշուի։

6. Աս վերջի բաւածներն աղէկ ընելու համար՝ մէկ կողմանէ անաչառ, մէկալ կողմանէ ալ չափաւորուած քննադատութիւն[1] պէտք է։ Կ'ըսենք անաչառ. որովհետեւ ուսման բանը գործքը ճշմարտութեան հետ է, ուսումնասէրը՝ որն որ իր գաղափարէն ստիպուած է ճշմարտասէր ըլլալ, կը մտածէ որ իր ներողամիտ դատմամբն անստոյգը. ստոյգ չ'ըլլար, առաւել եւս՝ ստութիւնը ճշմարտութեան չիդառնար։ Դարձեալ մարդ ինք զինք խաբէ ալ, կեղակարծն իրեն համար անտարակուսելի ալ ընէ, ինչ իրաւամբ ուրիշներուն եւ ի մասնաւորի՝ օտարներուն հաւանութիւնը կրնայ պահանջել։

Բայց մէկալ կողմանէ ալ չափաւորութիւն մը պէտք է։ Ի մասնաւորի հնութեան հետ՝ գոնէ քիչ մը ներողամտութեամբ վարուելու ենք։ Հնութեան վերաբերած ամէն խնդրոց մէջ պէտք է մտածել որ միշտ նախագրութեան[2] պատճառն իրեն կողմն է, այս ինքն՝ խնդիր ելլելէն յառաջ՝ ինք իրեն նպաստաւոր վիճակին մէջ կեցած էր. առանց դրական պատճառներու՝ զինք աս ստացուածէն իրաւամբ չենք կրնար մերժել։ Անոր հակառակ ուսումնական աշխարհքիս մէջ խիստ տեսարան մըն է անցած գացած հնութեան՝ դատաստանի կանչուիլը. հնութիւն մը որչափ որ մեզմէ հեռու է՝ այնչափ անվախ ու համարձակ ոսոխներ կ'ունենայ, թեթեւ կասկածներով վրան վճիռ կը տրուի, բարձրագահ աթոռէն վար կ'առնունք, երբեմն հայրենական մատենագրութենէ

1 Critique.
2 Prescription.

ալ դուրս կ՚աքսորուի։ — Աս երկու կողմանէ զահավէժ ճամբուն վրայ շիտակ քալելու հնարք՝ կիրքերէ ազատ ըլլալն ու ճշմարտութենէ վեր պատուական բան աչքին առջեւը չունենալն է։

Աս բաժանումներէն ետքը՝ հարկաւ կը բաղձացուի որ մասնաւորի իջնալով մէկիկ մէկիկ իւրաքանչիւր ժամանակուան՝ ամէն մէկ մատենագիրը մօտանց դիտուի ու զննուի, եւ բոլոր մատենագրութեան ընթացից վրայ աւելի որոշ գաղափարներ ունեցուի։

Աս մանրամասն ծանօթութիւնը գոնէ հին մատենագրութիւններնուս համար՝ իրաւամբ կը պահանջուի. որովհետեւ պատմական նիւթոց մէջ՝ մարդ ընդարձակ դաշտավայրի մը վրայ կեցողի կը նմանի, որն որ իր միշտ մօտերն որոշ ու յստակ կը տեսնէ, անկէ անդին՝ պայծառ բայց քիչ մ՚անորոշ, իսկ տեսութեան հորիզոնին վրայ եղածները՝ թէ մութ թէ անորոշ։ Հին մատենագրութիւններնուս պատմութիւնն ալ՝ մեր տեսութեան հորիզոնին վրայ է, որն որ որչափ հին՝ այնչափ մութ, շատ անգամ որչափ յարգելի ու պատուական՝ այնչափ խնդրոյ տակ է։ Ուստի մեր տեսողական կարողութիւնը զօրացընելով եւ անոր օգնելով՝ աս հեռաւոր բաներէն գոնէ մէկ քանին սովորականէն քիչ մը աւելի պայծառ ու լուսաւոր տեսնելը՝ թէպէտ դժուար, բայց օգտակար ու զուարճալի է։

# ԱՌԱՋԻՆ ՄԻՋՈՑ

## ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵՆԷ ՅԱՌԱՋ

## ԳԼՈՒԽ Ա

### ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՍԿԶԲՈՒՆՔ

### (Անգիր ժամանակ)

ՀԱՍԱՐԱԿՕՐԷՆ մեր մատենագրութեան գլուխն անմիջապէս Մար-Աբաս կ'անցնի, առջի դասն ու թագաւորական պատմագրին որոշուած է։ Շա՜տ աղէկ․ Բայց իր գիրքը կրնայ մեր առջի ազգային գործն ըլլալ, սակայն առջի մտաւորական ծնունդը սեպելու հիմ չունինք։ Ուրեմն ուրիշ սկիզբ փնտռելու ենք։

Ստոյգ է՝ ինչպէս ամէն ազգի՝ ասանկ ալ Հայոց մատենագրութեան սկզբանցը վրայ կատարեալ պատմական լուսաւորութիւն ունենալ՝ կարելի չէ. որովհետեւ հասարակօրէն նոյն իսկ ազգաց պատմութեան բուն նախնական սկիզբն ալ՝ առասպելաց կամ անյայտ զրուցաց ամպերու մէջ ծածկուած են։ Նաեւ իրին բնութիւնն ալ ասանկ կը բերէր. ազգ ըսածնիս՝ բարոյական անհատ մը սեպելու ենք, որն որ զանազան նպաստաւոր դէպքերու սպասէ, մինչեւ որ երկայնամեան օգնութեամբ՝ բնածին բանականութիւնը բարձրագոյն ոյժ ու զօրութիւն մ'առնելով՝ հասուն եղանակաւ իր մտածութիւններուն ճիշդ բացատրութիւն ու փեսախան գոյութիւն մը տայ։

Սակայն գրականութենէ առաջ կամ գրականութենէ անկախ՝ առհասարակ հին ազգերը, մանաւանդ Ասիացիք ու անոնց հետ նաեւ Հայերը՝ իրենց սեպհական ուսումն ու գիտութիւնը եւ միանգամայն իրենց մտածութիւնները վերջիններուն հաղորդելու ա-

ուանձին եղանակ մ'ունեցած են։ Ուրեմն մեր ազգին գրաւոր ուսմանը՝ նախընթաց նախնական ուսումնականութիւն մը, կամ մտաւորական կրթութեան աստիճան մը պէտք ենք դնել։ Միանգամայն ալ իրենց ուսումնականութիւնը մեր գրաւոր ուսումնականութեանը. կամ մատենագրութեանը խարիսխ պիտ'որ սեպենք։ Ապա թէ ոչ՝ ի՞նչպէս կարելի էր որ առջի ազգային մանաւանդ պատմական գիրքը բազմաթիւ դարերէ ետքը յանկարծ ելլէ՝ առանց իրմէ առաջ ազգային պատմական տարերք ունենալու։ Կրնա՞նք յորդաջուր գետ մը՝ առանց իր առուներն ու ծածուկ ջրի երակներն ենթադրելու՝ մէկէն բխած մտածել։

Իրաւամբ հետաքրքիր է ազգային հնութեանց նախանձաւոր քննիչը՝ աս աստիճանի հին հայրենական ուսման կերպարանքը տեսնելու։ Բայց յայտնի է որ բանականօրէն այսչափ հին բաներուն միայն մնացորդներով գոհ պիտ'որ ըլլուի. մանաւանդ որ աս գեղեցիկ մնացորդներն իրենց նախնական ամբողջը ցուցընելու բաւական են։ Թէպէտ աս մնացորդներուն մէկ մասին վրայ՝ իրենց ժամանակին նկատմամբ՝ ճիշդ երաշխաւորութիւն մը չկայ՝ որ իրենց վերջին աստիճանի հնութիւն մը տանք, բայց մեր նպատակին համար՝ իրենց հնութեանը նկատմամբ այսչափ միայն ապահովութեամբ գիտնալը բաւական է, որ երբեք գրքի մը կամ ընդհանրապէս գրականութեան ազդեցութեան մը տակ շինուած չեն, հապա՝ ազատ ու բուն աղբիւրէն մտաց բերքն ու բխումն են։ Դարձեալ ձեռքերնիս եղածը՝ որչափ քիչ հնութիւն ալ ունենայ, միշտ յայտնի կը ցուցընէ որ իր սեռին մէջ առջի բերքը չէ, իրմէ առջի բանի մը մասն է, կամ արդէն կրթուած ու սովորական եղած արուեստի մը կամ հին ճարտարութեան մը գործածն է։

Հիմակ աս ծանօթութեանց տեղիքը փնտռենք։

## ՀԱՏՈՒԱԾ Ա.

### Հին լեզու։

Մեր երակներուն մէջ քալող արիւնէն ետքը՝ չկայ անանկ սերտ ու յայտնի կապ մը՝ որ զմեզ մինչուկ մեր հին ու հնագոյն հարցը հետ կապէ՝ ինչպէս լեզունիս։ Նոյնը առաջին ընդարձակ ու գեղեցիկ գիրքն է, որուն մէջ մեր հարցը գաղափարները, մտածութիւններուն ընթացքը, սովորութիւններն ու ճարտարութիւնը կրնանք քիչ շատ ճշդութեամբ ու զուարճութեամբ կարդալ, իրենց փորձառութեանը, ծանօթութիւններուն ընդարձակութիւնը եւ իրենց քաղաքականութեան աստիճանն ընդհանրապէս որոշել։ Հոս մեր նպատակը չիկրնար ըլլալ՝ որ աս տեսութեամբ բոլոր հայերէն լեզուին վրայէն անցնինք։ Մեր ըսածը կամ հաստատելու կամ բացայայտելու համար՝ քանի մը օրինակ կամ մերձեցուցում բաւական է։

Մեր ազգային պատմագիրներէն վկայութիւն չունինք որ շատ հին ժամանակները՝ Տնտեսական տեղեկութիւնները Հայոց մէջ յառաջ գացած ըլլան։ Բայց թէ որ դառնանք մեր հին լեզուին հարցընենք, մեզի ատոր վրայ մեծ լոյս կու տայ, եւ պատմութենէ գիտցածի պէս՝ պէտք ենք ընդունիլ որ աս գիտութիւնները կամ տեղեկութիւնները շատ կատարելագոյն աստիճանաւ մը հին Հայոց մէջ ծաղկած էին։ Ի՛նչ անուանց առատութիւն ու հետեւապէս գաղափարաց յորդութիւն եւ որոշ յստակութիւն չեցուցուիր, թէ որ տնտեսական տեղեկութեան՝ մինակ Անդէորդական ճիւղին վերաբերած բացատրութիւններն աչքէ անցընենք, որոնք այբուբենի կարգաւ ասոնք են. Ալոջ, ամիկ, այծ, աւան, արջառ, աւդիք, բուծ, գառն, եզն, երինջ, զուարակ, ընջուղ, խաշն, խոյ, կով, մաքի, նոխազ, որթ, ոչխար, որոջ, ուլ, ցուլ, քաղ, քաւշ.

— խոզ, խոճկոր, կինճ, վարազ, եւայլն, եւ անոնց բազմութիւնը՝ անդեայ, երամակ, կոյտ, հօտ, վտառ եւ այլն: Ասանկ ալ մշակական ճիւղէն՝ արմտեաց սեռք յիշելու համար՝ Գարի, գաւարս, դըկուղ, կորեակ, հաճար, ոլոռն, ոսպն, սիսեռն, վարսակ, ցորեան եւ այլն: Մշակութեան վնասակար բոյսերուն անունները՝ Գաղձն, դժնիկ, եղինճ, ժանտափուշ, խայթահար, կայծու, որոմն, պատատաղիճ, սրափուշ, տատասկ, քաղ եւ այլն. Վնասակար անասուններէն՝ Թրթուր, մարախ, ջորեակ եւ այլն: Արօր, մաճ, կամն, մանգաղ, գերանդի եւ այլն, ի մանաւորի անտեսական մեքենականութեան վերաբերեալ բառեր են: Աս բառերն ըստ մեծի մասին պարզ ու յայտնի նախնական բառեր ըլլալով՝ շատ մեծ հնութիւն կը պահանջեն: Ուստի այսչափ հեռաւոր հնութեան համար՝ այսչափ երաշխաւորներ ունինք վկայելու՝ որ մեր հարքը շատ կանուխ աս բաներուս մէջ յառաջացում ու կրթութիւն ունեցեր են, ո՛չ լեռնորդեայ ազգեր են եղեր եւ ո՛չ հնութեան ան ազգերէն՝ որոնք աղքատ ու ողորմելի ապրուստով ու հագուստով կեանքերնին կը պահէին: Անդէորդական դարմանոց գիտութիւնը տարազագործութեան[1] կ'առաջնորդէ, անոր համար ալ հին լեզուներնուս մէջ հարուստ եւ որոշ բացատրութիւն ունեցող նիւթերէն մէկն ալ ոստայնանկութեան արուեստն է: — Ասոր հակառակ թող փնտռուի ծովային կենդանեաց կամ բերոց անուններ. ինչ նուազութիւն ու աղքատութիւն. ստուգիւ ուրիշ կերպ կ'ըլլար՝ թէ որ Հայք շատ կանուխ Կիլիկիայի պէս ծովեզերեայ երկիր մ'ունեցած ըլլային:

Բարձրագոյն կարգի ծանօթութեան մը գանք: Թէ որ մեր պատմագրաց կապուելու ըլլանք՝ Հայոց հեթանոսական կրօնին մինակ վերջին վիճակը գիտենք. այս ինքն մինակ ան ատենուան կրօնը, երբ

1 Manufacture.

որ Հայաստան՝ իր արեւմտեան դրացիներէն (Փոքր Ասիայէն), քիչ մ'ալ հարաւային դրացիներէն (Միջագետքէն) կուռքեր ու քրմեր գալով՝ նոր յունական դիցաբանութեան հետ խառնուած՝ դիցաբանութիւն մ'ունեցաւ։ Բայց թէ որ հին լեզուին դիմենք, մեզի քանի մը սանդուխ կու տայ, որ զմեզ քիչ մը ամբառնանք՝ աւելի հեռաւորը տեսնելու։ Արամազդ (հին պարսկ. Աուրամազդա), Հրեշտակ (նոր պարսկ. Ֆէրիշթէ՝ որուն հին պարսկերէնը հարկաւ աւելի մօտ է), Դեւ [1] (հին պարսկ. Դէւա), Դժոխք (հին պարսկ. Դուժախ)՝ անունները, որոնք շատ յայտնի ու բաւական ամբողջ բոլոր զրադաշտական վարդապետութեան բովանդակութիւնը կը բացատրեն, առանց նախնական հնչմամբ լեզուին մէջ տեսնելով՝ հարկ կ'ըլլայ դնել որ երբեմն իրենց նշանակութեամբն ու ամբողջ վարդապետութեամբն ալ Հայոց մէջ ընդունուած ու գործածուած էին։

Սակայն Հայոց բուն հին հեթանոսական կրօնը՝ Քաղդէացւոց, Փիւնիկեցւոց ու Ասորւոց շատ նիւթական ու զեղխ կրօնի տեսակէն չէր, հապա բուն ներքին Ասիայի հեթանոսական քիչ մը յստակ կրօններուն կը վերաբերէր, եւ ի մասնաւորի իրենց հարաւային արեւելեան կողմանէ դրացի Մարաց կամ Հին Պարսից կրօնին։ Յայտնի կը տեսնուի որ նոր դիցաբանութենէն առջի ալ ժողովրդեան կամ ռամկին մէջ առջի գաղափարները միշտ մնացին. որովհետեւ յիշուած բառերէն շատերը Հայոց քրիստոնէական լեզուին մէջն ալ առնուեցան, եւ արդէն իրենց նախնական նշանակութիւնն ալ քիչ մը ուղղուելէն ետքը՝ քրիստոնէական գաղափարաց հետ նոյն էր։

1 Մեզի համար՝ աս անունն առջի անգամ հայ հեթանոս բանաստեղծը յիշած է. այս ինքն՝ փոխանակ ըսելու որ Մարք Արտաւազդ արքայորդին մանկութեան ատենը մոլի ու կատաղի ըրին, Վիշապազունք՝ Արտաւազդ մանուկը գողցան, կ'ըսէ, ու տեղը Դեւ դրին։

Լեզուէ մը բան հեռացընելու ուրիշ եղանակ մ'ալ կայ։ Հին հեղինակներուն սովորութիւնն էր, որ բանի մը էութիւնը մեկնել ուզելու ատեններին ենթադրելով որ հիները շատ բաներու մէջ մեզմէ աղէկ իրին բնութիւնն ըմբռնած ըլլան, շատ անգամ նոյն իրին անուանը ստուգաբանութեան կը դիմէին։ Աստանկ Կիկերոն՝ որն որ իր նախնեացը վրայ չափէ դուրս յարգութիւն ու համարում ունէր, lex (օրէնք) անունը՝ ligare (կապել) բայէն յառաջ կը բերէ, ըստ որում օրէնքն է՝ որ մարդուս ազատութիւնը կը կապէ. ինչպէս նաեւ Լակտանտիոս religio (կրօն) բառը՝ religare (վերստին կապել) բայէն կը հանէ, ըստ որում կրօնն է՝ որ մէկ մը Աստուծմէ մեղօք բաժնուած արարածը նորէն Աստուծոյ հետ կը կապէ։ Տարակոյս չկայ որ աս կերպ խօսքերն ընդհանրապէս չեն կրնար արհամարհուիլ, որովհետեւ թէ որ ճշդիւ իրին էութիւնը չեն նշանակեր ալ նէ՝ գոնէ շատ անգամ ան կը ցուցընեն՝ որն որ հիները նոյն իրին վրայ ըմբռներ են։ Օրինակի աղագաւ՝ Հայ փիլիսոփայ մը անտարբեր բան չսեպեր որ հին լեզուին մէջ՝ անձն բառը հաւաստարապէս գոյացութիւն (այս ինքն՝ հաստատուն բան, փոփոխելեաց մէջ միշտ էապէս անփոփոխ մնացողը) եւ միանգամայն մարդկային հոգին նշանակէ։

Բայց աս բանիս մէջ չափն անցնելը շատ դիւրին է, անանկ որ ծանրութեան սահմանէն ծաղրականութեան սահմանը կոխելու մինակ քայլ մը բաւական է։ Մեր տարեգիրներէն խօսելու համար, Կիրակոս Գանձակեցի աս բանին բաւական զուարճալի օրինակ մը կու տայ։ Սիւնեաց կողմերը ձեռքն իշխանութիւն ունեցող անձ մը, կ'ըսէ պատմագիրը, կը պահանջէր որ Տղոց մազը թողուին ու չկտրուին մինչեւ որ երկըննայ ու պարի (պատ առցէ), որովհետեւ ասկէ է որ, կ'ըսէր, պարանք կ'ըսուի. եւքն

ալ պէտք է կորչել, կ'ըսէր, որովհետեւ տակէ է որ կորչին կ'ըսուի։ Մենք աս հարուստ՝ բայց դժուարութեամբ փորելու բովը ցուցընելը բաւական սեպելով՝ հնութեան ուրիշ հետքերը փնտռենք։

## ՀԱՏՈՒԱԾ Բ.

### Յատուկ անուանք։

Մեր գրականութենէ առաջ գտնուած ազգային տեղեկութեանց հետքերը փնտռելու սկսելով՝ պինդ առաջ լեզունիս առջեւ ելաւ։ Բայց լեզուն որչափ հնութեան գեղեցիկ թանգարան ալ էր նէ՝ տարանջատ ու սեռական կամ ընդհանուր նշանակութիւն ունեցող բառերէն կամ անուններէն աւելի բան մը չէր մատուցաներ մեզի։ Աս տարանջատ անունները մեզի ամբողջ տեղեկութիւն մը տալու համար՝ մեր համեմատութիւններուն ու բաղադրութիւններուն կը սպասեն։ Սակայն անանկ անուններու կարգ մ'ալ կայ, որ ասանկ ընդհանուր բաներ չեն ցուցըներ, ամէն մէկն ամբողջ տեղեկութիւններ կու տան, առանց մեր համեմատութիւններուն կարօտ ըլլալու՝ հնութիւնն իրենց պատմական նշանակութիւն մը որոշած տուած է։ Անանկ որ ամէն մէկը մէյմէկ ամբողջ նախադասութիւն են՝ որ աս կամ ան տեղեկութիւնը կամ դէպքը կը պատմեն։

Արդէն բնական է որ թէ անձանց թէ տեղեաց անունները սկզբնաբար ամէնն ալ նշանակութիւն ունեցող ըլլան. անձի մը յատկութիւնը կամ բարքը, տեղւոյ մը բնակիչը կամ շինիչը, եւ կամ դիպուած մը, նոյն անձին կամ տեղւոյն անուանակոչութեանն առիթ եղած է։ Աս սովորութեան՝ որն որ բոլոր հնութեան հասարակ է, բայց մանաւանդ արեւելեանց մէջ, մեր հին հարքն ալ մասնակից էին։ Անոր համար զարմանք չէ որ բուն Հայկազանց անուններուն՝ զորոնք պահուած տեսնելու բախտն ունեցած ենք,

շատերը յայտնի նշանակական ըլլան[1] : Մտադրութեան արժանի բան է՝ որ հին արեւելեայք ասանկ նշանակական անուններու միջնորդութեամբ երեւելի գործքեր յիշողութեան մէջ պահելու ջանացած են : Աս միջոցը, որչափ թերակատար ալ ըլլայ, հիներուն համար՝ որոնց ծանօթութիւններուն չափը դեռ ընդարձակ չէր, շատ պիտանացու էր. որովհետեւ աս անուններն իբրեւ թէ կռուան մը կամ խարիսխ մը կ'ըլլային ու անոնց վրայ՝ բերնէ բերան պատմուած զանազան զրոյցներ կը հաստատուէին կամ իրարու հետ կը կապուէին, եւ իբրեւ թէ մէյ մէկ պատմութիւններու հանելուկներ էին :

Թէպէտ աս ընթացքը Յունաց գեղեցիկ ու զարդարուն հին զրուցաց մէջն ալ կրնանք տեսնել[2], սա-

1 Խոր. Գիրք Ա. Գլ. ԺԹ. ԻԲ. Պերճ, Արբուն, Բաղակ, Սկայորդի, եւ այլն :

2 Օրինակի աղագաւ՝ աւանդելը կը պատմէ որ Աթենացիք՝ իրենց Եգէոս թագաւորին ատենը՝ Մինովս Կրետէի թագաւորէն յաղթուելով, ստիպուեցան ամօթալի դաշամբ մը յանձն առնուլ որ տարուէ տարի երիտասարդաց ու երիտասարդուհեաց բազմութիւն մը Կրետէ խրկեն, որ հոն Լաբիւրինթոսին մէջ կեցած Մինոտաւրոս ըսուած գազանին կերակուր ըլլան : Հեղ մը Թեսեւս՝ Աթենացւոց թագաւորին հսկայազօր որդին՝ ուզեց խաւրուող երիտասարդաց մէջ ըլլալ, որ իրեն առնական քաջութեամբը գազանը սպաննէ ու մարդիկն ազատէ : Ծերունի հայրը Եգէոս՝ ակամայ հաւանելէն ետքը՝ նաւապետին պատուիրեց որ ետ դառնալու ատեն սեւ առագաստին տեղ՝ ճերմակ առագաստ բանայ, թէ որ գործքն յաջողած է : Թեսեւսին գազանն սպաննելը դիւրին էր, բանը՝ Լաբիւրինթոսէն դուրս ելլելն էր. բայց անոր ալ ճար եղաւ : Կրետացւոց թագաւորին Արիադնէ աղջիկն աս կայտառ երիտասարդին խղճալով՝ Լաբիւրինթոսին դռնէն մտած ատենը՝ ձեռքը կծիկ մը դերձան տուաւ, որ անով մէյ մը դացած ճամբէն կարենայ նորէն ետ դառնալ : Թեսեւս գործքը լմընցուց, նաւը դէպ Աթէնք ճամբայ ելաւ : Բայց նաւապետն ուրախութենէն առագաստը փո-

կայն ոչ ան ապահովութիւնն եւ ոչ ալ մերինոց հետ ան մերձաւորագոյն նմանութիւնն ունին, որն որ բոլոր ժամանակագրութեան առջի յիշատակարանին, այս ինքն՝ Մովսիսի առջի գրքին մէջ տեսածնիս ունի։ Որովհետեւ աս գրքիս մէջ կը տեսնենք որ Մովսէս 51 անուն ստուգաբանած եւ ըստ մեծի մասին անոնց հետ կապուած ու աւանդութեամբ Աբրահամու զաւակացը մէջ անարատ պահուած զրոյցներն առջի անգամ աստուածային առաջնորդութեան տակ գրի անցուցած է։

Բայց մեր հնութեան գալով՝ ահաւասիկ նոյն համոզմամբ է որ նաեւ Խորենացին հին անուններէն մեր հնութիւններուն վրայ պատմական նիւթեր կամ գտած նիւթերուն՝ հաստատութիւն կը գտնէ։

Այսպէս Տարօն գաւառին անունը՝ Սեմայ Տարբան զաւկէն յառաջ կը բերէ. Զարեհաւանդ կամ Զարաւանդ գաւառինը՝ Զրուանէն (այս ինքն՝ Սեմէն, որովհետեւ ան կողմի արեւելեանք Սեմայ աս անունը կու տան, կ՚ըսէ)։ Ի մասնաւորի ազգային պատմութեան գալով՝ Հարք լեռնադաշտին անունը՝ Հայկայ հոն բնակելուն, ու Հայկաշէն գիւղինը՝ Հայկէն շինուելուն համար է, կ՚ըսէ. Հայկայ Բելայ հետ ըրած պատերազմին տեղը շինուած դաստակերտը՝ Հայք ըսուած է՝ կ՚ըսէ, իսկ Բելայ ինկած տեղը՝ Գերեզմանք։ Արագած լեռը՝ Հայկայ Արմենակ որդւոյն անունէն կը հանէ, Արմաւիր Հայկազանց հին նուիրական քաղաքը՝ Արմայիսէն, Մասիս լերան անունը՝ (Մասիս՝ Հայցական հոլովն է) Ամասիա նահապետին անունէն, Սիւնիք կամ Սիսական նահանգին անունը՝ Սիսակէն, Շիրակ գաւառին անունը՝ Շարայէն, Գառնի ձեռա-

խելու մնացած էր։ Ծերունի Եգէոսը՝ որ Աթենքի պարըսպէն սեւ առագաստը տեսաւ՝ յուսահատութենէն ինք զինքը ծով նետեց. ասանկով ան ծովը Եգէական ծով ըսուեցաւ։

կերտինը՝ Գառնիկ նահապետին անունէն, Գեղ լեռն ու Գեղարքունի գաւառն ու ծովը՝ Գեղամին անունէն, Փառախոտ ու Ցոլակերտ (կամ Ցողակերտ) դաստակերտները՝ շինողներուն անունէն, այս ինքն Փառոխէն ու Ցոլակէն է, կ'ըսէ. եւ անոնց անուանակոչութեան պատճառն ալ իրենց արտաքին կերպարանքն ու տեսքը կը դնէ, Փառոխին փառաւորութիւնն ու արութիւնը, իսկ Ցոլակին կայտառութիւնն ու գեղեցկութիւնը իրենց անուան առիթ սեպելով: Այսպէս նաեւ Այրարատ անունը Արայէն յառաջ բերել կ'ուզէ [1]:

Նշանաւոր անունք են ան կէտերը՝ որոնց վրայ մեր նահապետական պատմութիւնը հիւսուած է: Ան ցանցառ ծանօթութիւնները՝ զորոնք աս ժամանակիս վերաբերեալ դէպքերուն վրայ ունեցած ենք, ըստ մեծի մասին առր կամ անոր բնակութեան տեղը կամ զաղթականութիւնը կամ շինութիւնները կամ անձնական յատկութիւնն է: Աս պզտի տեղեկութիւններն ասանկ տեղական կամ անձնական անուններու հետ կապուելով՝ շատ դիւրաւ կրնային տեւողական ըլլալ:

Բայց մէկալ կողմանէ ալ՝ անտարակոյս է որ աս անգիր յիշատակները՝ յիշողութենէ յիշողութիւն անցնելու ատեն՝ կրնան կամ կրճատուիլ եւ կամ բոլորովին մարիլ: Մէյ մը ասանկ մարելէն ետքը՝ դարձեալ զանազան մակաբերութիւններու եւ համեմատութիւններու կարօտ կ'ըլլանք, թէ որ անոնցմէ տեղեկութիւն հիւսել կ'ուզենք: Անոր համար հոս ալ դարձեալ հնագէտ մը շատ շուտ կը գլորի՝ թէ որ ինք զինք մակաբերութիւններու ձեռք թողու առանց ընտրութեան առողջ ճաշակ ունենալու: Թէ վերը նշանակուած օրինակները կամ անոր նման նոյն մատենագրին քով գտնուածներն ինչ ատի-

1 Խոր. Գիրք Ա. Գլ. Ժ. ԺԲ. ԺԵ:

ճանի սառուցութիւն կամ ճշդութիւն ունին՝ անոր վրայ շատ չ՚անցնիր, մանրամասն խօսելու առիթ կ՚ունենանք։

## ՀԱՏՈՒԱԾ Գ.

### Առածներ։

Առածք ուրիշ միջոց մըն են, որով հնութիւնն ինք զինքը տեւական ընելու աշխատած է։ Հիները գլխաւորաբար իրենց բարոյական սկզբունքներն առակներով յաջորդաց կ՚աւանդէին։ Գրոյ պակասութեան ատեն՝ գործնական խրատները յիշողութեան մէջ պահելու համար ասիկա մէկիկ ճամբայ էր։

Ասոր համար է որ քանի մը հնութենէ մնացած առակներնուս նիւթը՝ ուղղակի բարոյական եւ անուղղակի պատմական է։ Հայր մը իր սիրելի որդեակն առջեւն առնելով՝ կամ մոլութեամբ մը նշանաւոր եղած անցած գացած մարդու մը կեանքն առջեւը կը դնէ՝ որ մոլութեան մը բերած չարիքն ազդու եղանակաւ ցուցընէ ու անկից զզուշացընէ, եւ կամ իր նախնեացը մէջէն երեւելի դիւցազն մարդու մը քաջութիւնն ու զօրութիւնը պատմելով՝ զինք Հայրենեաց օգտին համար գործունէութեան կը յորդորէ։ Աս պատմական խրատներն անկէ ետեւ ընտանեաց մէջ համառօտ խօսքով մը յարմար ժամանակին յիշուելով՝ Առակ կ՚ըլլայ ու պատմութիւնը լռելեայն կ՚իմացընէ։

Աս առակը “Թէ քո Շարայի որկորն է, մեր Շիրակայ ամբարքն չեն„. — Թէ հատու ու թէ քաղցր յանդիմանութիւն մըն է, զորն որ չափաւոր ունեւոր մէկ ընտանեաց մէջ որկորոյն չափ չդնող մը ընտանեաց մեծերէն կ՚ընդունի։ Որովհետեւ Շարայ Արմայիսի որդին շատակեր ըլլալով եւ միանգամայն շատ որդւոց տէր, իր հայրն որ առանց ընտանիք մը պահելու միջոց չունէր՝ զինքը Շիրակ գաւառը խրկեց,

որուն տարածութիւնն ու պտղաբերութիւնը տասնեակ բնակիչներ կրնար հիւրընկալել[1]:

Երկրորդ աւանդէն մնացած կը գտնենք սա առա-կը. "Դիրբեւ զսէգն Տրդատ՝ որ սիգալովն աւերեաց զթումբս գետոց եւ ցամաքեցոյց ի սիգալ իւրում գլորձանս ծովուց„: Տրդատայ քաջութիւններն սա առակին առիթ եղած էին, որն որ պատերազմասէր ազգի մը բերան շատ վայելուչ էր[2]:

Կրնանք քաղաքական կամ գործնական՝ խոհեմու-թեան բացագանչական առակ մը սեպել սա ալ. "Այս արկեր զգացիւ գիրկս. (բայց թէ ժողովել կարիցես՝ մեծ զարմանք իցեն„), որ գրեթէ ան նշանակութիւնն ունի՝ որն որ սուրբ Գրքին "Ընդ-դէմ խթանի աքացել„ ըսածն ունի: Առիթը՝ ո-րուն մէջ կը պատմուի որ սա առակը գործածուած ըլլայ՝ խօսքին նշանակութիւնն ու զօրութիւնն աւելի ճիշդ կը ցուցընէ: Երբոր Շապուհ Բ. Սասանեան պարսիկ թագաւորը մեր Պապ արշակունի թագաւո-րին դէմ պատերազմի կու գար՝ Ուռնայր Աղուանից թագաւորը խնդրեց Շապուհէն որ պատերազմի ա-տեն ինք մինակ իր Աղուան գնդովը Հայոց գնդին դէմ կենայ, Հայերն ինծի յանձնէ, ըսաւ. թող Պարսից զօրքը՝ միայն Հայոց նիզակակից Հռոմայեցւոց զօր-քին դէմն ելլէ: Մերուժան արծրունին՝ որ ինքն ալ Պարսից կողմն անցած էր, երբ որ Ուռնայրի խնդիրն իմացաւ ու Շապուհին հաւանութիւնն ալ լսեց՝ դարձաւ Ուռնայրին ու վերի առակն ըսաւ: Թագաւո-նին քովի պատերազմը Մերուժանին խօսքը ստու-գեց. յաղթութիւնն Հայոց եղաւ եւ Ուռնայր Պապայ Մուշեղ զօրավարէն վիրաւորած փախաւ[3]:

Սա առակները կամ թէ ըսեմ առակաց փշրանք-

1 Առ Խոր. Գիրք Ա. Գլ. ԺԲ:
2 Ագաթանգ. էջ 99—100:
3 Բուզ. Դպր. Ե. Գլ. Դ:

— 21 —

ները՝ ինչպէս յայտնի կը տեսնուի՝ ամէնքն հաւասար հնութիւն չունին, այս ինքն՝ վերջիններն առաջիններն բարձր հնութիւնն ու կոկկութիւնը չունին։ Վերջիններն մեկնութիւնը յայտնի է. որովհետեւ ան երկուքն անանկ հեղինակներէ առնուած են, որոնք ճոխաբան ոճ մ'ունենալով՝ առակներն ալ ճապաղ ու ընդարձակ կերպարանք ընդունած են։ Իսկ առաջիններն գեղեցկութիւնն ու ամփոփութիւնը կատարեալ տեսնելու համար՝ պէտք ենք նախ աս ժամանակներուս հին ազգային բանաստեղծութիւնը զննել, որուն բաւական հարուստ մնացորդներ ունինք։

## ՀԱՏՈՒԱԾ Դ.

### Երգեր։

Թէ որ առակները մեր նախնեաց բարոյական իմաստութեան վճիռներն են, երգերնին՝ իրենց զուարթ զգածմանցն ու զուարճալի օրերուն փառաւորութիւնը, իրենց արուեստին, եւ գեղեցկութիւն, չափակցութիւն ու դաշնակաւորութիւն ճանչցող մտքերնուն զեղուածներն են։ Ասոնցմով մեր բուն հին նախնիքն որոշակի հնութեան ան ազգերուն պարը կը մտնեն՝ որոնք կրթութեան առաջին սկզբունքներէն ելած՝ կրթութեան որոշեալ աստիճան մը հասան։ Ազգ մը՝ որն որ բանաստեղծութիւն ունեցած է, մանաւանդ մեր ունեցած երգերուն վրայ տեսնուած կատարելութեամբ՝ հարկաւ բնութեան բիրտ ըմբռնմանց կապէն ազատած, իր երեւակայութեանը տէր եղած է, ու նոյնոյ կարողութիւնը զօրանալով՝ սկսած է բնութեան վրայ բարձրէն նայիլ, երեւակայութեան տուած պատկերները ժողվել, համեմատել եւ բազմագունեան ծաղկանց փունջի մը պէս ամբողջի մը կապել։

Բարեբախտութեամբ անանկ հին ազգային երգերուն գոյութեանը վրայ վկայելու հարկաւորութիւն

չունինք. բայց անանց ժամանակին, հեղինակներուն, տեսակներուն, օգնականներուն, նկարագրին, արուեստին ու լեզուագիտականին վրայ սովորականէն աւելի մտադրութեամբ նայելու կարօտութիւն կայ:

### Ա. Երգոց ժամանակն ու հեղինակները:

Բովանդակ մատենագրութիւններնուս մէջ չկայ անանկ բան մը որ ան զարմանալի տպաւորութիւնը վրանիս ընէ՝ զոր որ աս հին ազգային երգերուն իրենց նախնական կերպարանաց մէջ մնացած մասունքն անշուշտ կ՚ընէ: Աս տպաւորութիւնը գրգռող յատկութիւններէն առջինը անտարակոյս իրենց բարձր հնութիւնն է: Նաբոլէոն՝ Եգիպտոս արշաւած ատենը՝ հին Եգիպտացւոց մեծայաղթ բրգունքը Գաղղիացւոց ցուցընելով՝ "Վրանիդ դարեր կը նային,, ըսաւ. բայց հոս թէպէտ դարերուն վրայ նայողը մենք ենք, սակայն տպաւորութիւնը նոյն է:

Սակայն ե՞րբ է աս երգերուն ժամանակը: Աս երգերը մէյ մը շինուելու, մէյ մ՚ալ գործածուելու կամ կենդանի տեւելու ժամանակ կրնան ունենալ, եւ ընդհանրապէս՝ իրօք ալ ունեցած են: Շինուելու ժամանակին նկատմամբ՝ աս երգոց նիւթը ժամանակագրական պատմական ըլլալով ու ազգին սկիզբներէն մինչեւ հեթանոսական ժամանակին վերջերը ձգուելով՝ չէր կրնար ամէնը մէկէն հին ատեններն իսկզբան շինուած ըլլալ: Մէկալ կողմանէ ալ՝ թէպէտ ըստ ինքեանց կարելի էր որ ամէնը մէկէն հեթանոսութեան վերջին ատենները շինուած ըլլային, սակայն աս տատամսութենէն ալ զմեզ ազատելու համար պատմութիւնը մեզի հաստատուն կէտ մը կու տայ եւ Քրիստոսէ մէկ ու կէս դար (այս ինքն Հայաստանի քրիստոնեայ ըլլալէն 450 տարիի չափ) յառաջ բացայայտ աս երգերուն գոյութիւնը կը ցուցընէ[1]: Երբ որ մէյ մը ստուգութեամբ գտանք որ

1 Մար-Աբաս, առ Խոր. Գիրք Ա. Գլ. ԺԳ:

այս երգերը մէկ անգամով շինուած չեն, ո՞վ կրնայ հաւանական սեպել՝ որ միայն երկու անգամով շինուած են։ Արդէն երգին ան մասն որն որ Արտաւազդ արքայորդւոյն վրայ գովութեամբ կը խօսի՝ բնականապէս՝ երգին ան մասէն առաջ շինուած է, որուն մէջ որ Արտաւազդ կ'անիծուի։

Այս անգամով շինուած երգերը՝ զանազան երգիչներ կամ բանաստեղծներ կ'ուզեն։ Սակայն աս պատմական երգերուն հեղինակները յանուանէ կամ ի մասնաւորի ճանչնալու յոյսը մէկդի թող տալով՝ հազիւ կրնանք մինակ ընդհանուր որոշում մ'ունենալ։ Նոյն իսկ աս երգերուն նիւթը կը ցուցնէ որ ոչ քրմերէ կամ անոնց ազդեցութեան տակ եւ ոչ կրօնական յիշատակներու կամ բագիններու առջեւ երգուելու համար շինուած են, որովհետեւ աս երգերն ըստ մասին քրմերու եւ բագիններու ժամանակներէն յառաջ էին. Հապա անանկ անձինք են աս բանաստեղծները՝ որոնց առջեւ արքունիքը գոց չէ, կրնան կոր բարձրագոյն կարգի դէպքերուն մանր հանգամանքն ու ծածուկ պատճառներն իմանալ։ Դարձեալ՝ աս բանաստեղծներն որոշեալ գաւառի մը փառքը չեն, մինակ տոհմի մը պարծանքներուն քարոզը չեն, իրենց երգը Հայաստանի զանազան իրարմէ հեռու տեղերու եւ տոհմերու յիշատակներն ունի, եւ ասով ազգային միութեան զգացումը զանազան հայ ցեղերու մէջ պահելու մէկիկ է։ Բայց հարկաւ Հայաստանի ամէն կողմը բանաստեղծութեան փափուկ տունկը բուսցնելու եւ սնուցանելու հաւասար յարմարութիւն չունէր։ Արդեօք Յունաց յոնիական կամ բիովտական երգեցկաց զանազան դպրոցները հոս ալ փնտռելո՞ւ է։ Ո՞վ կրնայ որոշակի ըսել թէ արքունիքը կամ քանի մ'ազատ ցեղեր կամ նախարարութիւններ իրենց քաջութիւններն անմահացընելու համար պատմական

երգիչներ ունեցած չեն, եւ կամ Յունաց հոմներգուաց [1] պէս՝ Հայոց վիպասաններն ալ Ազատաց աներէն վարձուած չէին։

Աս երգերուն շինուիլը հեթանոսութեան հետ միատեղ գոնէ ընդհանրապէս դադրած ալ է նէ՝ գործածութիւնը հարկաւ կը տեւէր, որդէն շինուածները յիշողութեանց մէջ կենդանի էին։ Բայց քրիստոնէութեան պաշտօնեաները որչափ կարելի է՝ աս հեթանոսութեան դաշտավայրներուն վրայ բուսած քիչ շատ թունաւոր ծաղիկները խղդելու կը նայէին։ Եւ ստուգիւ բնականապէս շատ մեծ կրնային ըլլալ ան բարուց վնասակար տպաւորութիւններն, որոնք (ինչպէս ունեցած հատակոտորներնուս վրայ տեղ մը կ՚երեւայ) հսկայագործ այլաբանութիւններով կը գրգռուէին, ու բանաստեղծական հրապոյրները իրենց հեթանոսական փառաւորութիւններուն յիշատակը շատ կենդանի եղանակաւ նորոգելով՝ չափէն աւելի զիրենք իրենց նախնեաց կը մօտեցընէին։ Հին Հայոց որչափ ալ "անսիրելութիւն երգարանաց բանաւորաց„ [2] տանք՝ սակայն բաւական ընդհանուր գործածութիւն կար. չորրորդ դարուն առանձինն իրենց վիպական երգերուն ունեցած մեծ սէրը գիտենք [3]։ Դեռ հինգերորդ դարուն՝ իրենց գինաւէտ երկիրներու բնակիչ ու կենցաղասէր գողթնացիք աս հայրենի երգերն Երասխայ ափանց մօտ ու այգեստաններնուն մէջ կը հնչեցընէին [4]։ Ասոնց սաստիկ մեծ սիրով աս երգերը պահելուն [5] մեկնութիւնն՝ իրենց

1 Rhapsodes.
2 Խորեն. Ա. ԳԼ. Գ։
3 Փ. Բուզ. Գ. Դպր. ԺԳ. ԳԼ. "Զիւրեանց երգս առասպելաց զվիպասանութեան սիրեցեալք ի փոյթ կրթութեանցն, եւ նմին հաւատացեալք եւ ի նոյն հանապազորդեալք„։
4 Խորեն. Գիրք Ա. ԳԼ. ԼԱ։
5 Խորեն. Գիրք Ա. ԳԼ. Լ։

հեթանոսական հայրենի կրօնին ունեցած սէրն ու նախանձաւորութիւնն է։ Գողթնացիք գրեթէ Հայոց մէջ այն ցեղն եղան քրիստոնէութեան նկատմամբ՝ որն որ Գերմանացւոց մէջ Սաքսոններն էին։ Դեռ հինգերորդ դարուն առջի կէսին իրենց մէջ ծածուկ կամ յայտնի հեթանոսութիւն կար, անանկ որ Ս. Մեսրոպ իր առաքելական կենաց մէկ մեծ մասն անոնց դարձին զոհեց[1]։ Ասանկով հեթանոսական երգերը՝ հեթանոսական կրօնը, եւ հեթանոսական կրօնը՝ երգերը բռնելով, նոյն դարուն վերջի կէսին մէջ՝ առանձինն Գողթան երգիչներու ակումբն իբրեւ նշանաւոր համբաւուած էր[2], եւ այն երգերը գոնէ ըստ մասին շատերուն ծանօթ էին[3]։ Ո՜վ կը յուսար որ հինգ դար ետքն ալ դեռ անոնց հետքը գտնուի։ Մագիստրոս բոլորովին նոր հատուած մ'ալ գեղջկաց բերնէն լսած է (որն որ ետքէն կը տեսնենք)։ Մէկ կողմանէ իր անձին բարոյական նկարագիրը՝ երաշխաւորութիւն կու տայ որ աս ծանր մարդը զմեզ խաբել ուզած չըլլայ, մէկալ կողմանէ ալ՝ նոյն դարուն բանասիրական ծանօթութեանց վիճակը ապահով կ'ընէ զմեզ՝ որ խաբել ալ չէր կրնար. որովհետեւ միայն տասնուիններորդ դարուս հայերէն բանասիրական ծանօթութիւնները գուցէ հազիւ կարող ըլլան կերպով մը այն նոր հատուածին պէս հատուած մը՝ առաջուց ունեցած հատուածներնուս նմանութեամբ՝ շինել։ Ա՛լ անկէ ետեւ աս երգերը հնչելէն կամաց կամաց դադրելով՝ գրոց մէջ իրենց թողուցած հետքերը կը փնտռուին։

1 Կորիւն՝ Վարք Ս. Մեսր. եւ Խորեն. Գիրք Գ. Գլ. ԽԷ եւ Կ։
2 Խորեն. Գիրք Բ. Գլ. ԽԹ։
3 Խորեն. Գիրք Բ. Գլ. ԿԱ։

Բ. Երգերու տեսակը։

Երգերը՝ որոնց ժամանակին ու հեղինակաց վրայ խօսեցանք, որչափ հնութեան զանազանութիւն, որչափ այլեւայլ հեղինակներ ունենան, սակայն ամէնքը մէկէն մէկ տեսակ են, պատմական բանաստեղծութիւն[1] կամ մեր նախնեացը լեզուաւ խօսելով՝ Վէպք[2], Վիպասանութիւն, Վիպագործութիւն[3] ու Թուելեաց Երգեր[4] են։

Բայց սա վիպագործութեան՝ որն որ միշտ ու ամէն տեղ բանաստեղծութեան անդրանիկ ծնունդն եղած է, շուտով քնարականը[5] կը հետեւի։ Ժողովուրդ մը՝ որ մէյ մը իր քաջերն սանկ արուեստով փառաւորելու յաջողակութիւնն ունեցած էր, անկարելի էր որ սա իր ճարտարութիւնն իր վառվռուն ընկերական կենաց զանազան առիթներուն մէջ չգործածէր, եւ անանկով վիպական երգերէն զատ զանազան առթից յարմար կարճ կարճ երգեր չունենար։ Իրօք ալ Նուագ, Ցուցք, Գեղջնք, Մրմունջք եւայլն անուամբ երգեր յիշուած են. (տաղ, շէր եւայլն անունները՝ թէ անուամբ ու թէ իրօք շատ նոր են)։

Սա քնարական երգերուն արուեստաւորաց կողմանէ սա անտարակոյս է՝ որ ինչպէս պատերազմական ու քաղաքային դէպքերն արիական մտածութիւն ու սիրտ պահանջելով՝ վիպագործութիւնը գլխաւորաբար բանաստեղծից ձեռքն էր, մինչ քնարականը՝ գլխաւորաբար ընտանեկան յարաբերութեանց աւելի դիւրաշարժ բանաստեղծուհեաց արուեստ կը սեպուէր։ Թէպէտ ասոնցմէ՝ առջիններուն պէս առջեւնիս օրի-

1 Épique.
2 Ἔπος
3 Épopée.
4 Ուրիշ անգամ Փ. Բուզանդէն ու Խորենացիէն յառաջ բերուած տեղերը։
5 Lyrique.

նակներ չունինք՝ իրենց որպիսութիւնը քննելու, սակայն անոնց թէ առջիններէն զանազանութիւնն եւ թէ իրարմէ տարբերութիւնը ստուգիւ արուեստի կողմանէ չէ, որչափ՝ իրենց նիւթին ու գործածութեան առթից կողմանէ:

Հայոց դեռ քրիստոնէութեամբ բարձրագոյն մտածութիւններու եւ յոյսերու չվերացած բնութեան կենաց մէջ ընկղմած վայրագ ժողովուրդն իր պատերազմներէն ու որսերէն ետքը՝ ուրիշ մէկ այնչափ զինք բոլորովին յափշտակող ու խորունկ մտադրութիւնը գրաւող բաներ չունի՝ ինչպէս զուարթ ու ընկերական խնճոյք կամ գինարբուք մը, յաջող ու յուսալից հարսանիք մը ու անողոքելի մահուան սոկածը, որոնք իր կենացն ողբերգութեան[1] նշանաւոր արարուածներն[2] են: Մեր հին պատմագրութիւնները՝ որչափ մասնաւոր դէպքեր պատմելու ագահ ըլլան, սակայն շատ անգամ առիթ կ'ունենան կամ թագաւորական հարսնիք մ'երեւցընելու, որուն հանդիսութեանն ատեն բոլոր երկիրը շարժի, ու այլեւայլ հրապարակական ուրախութեան նշաններուն մէջ՝ ցոյց կամ ցցոց երգեր ըլլան[3], եւ կամ ինչպէս թագաւորները[4], ասանկ ալ ընչաւէտ նախարարներ իրենց որսին երէներէն շինուած կերակուրներով զարդարուած ու ծաղկալից սեղաններուն վարձակներ ու երգեցիկներ պակաս չէին ըներ[5]: Այսպէս Բակքոս ու Աստղիկ իրենց քնարականն ունենալէն ետքը՝ ողբերգակ քնարական մ'ալ դաժան Արտաշիսին նուիրուած էր: Ինչպէս ամէն նաեւ քիչ մը նուազ կրթեալ հեթանոս ազգաց՝ անանկ ալ

1 Tragédie.
2 Acte.
3 Ագաթ. ԺԷ:
4 Խորէն. Գիրք Գ. Գլ. ԺԹ: Փ. Բուզ. Ե. Դպր. Գլ. ԼԲ:
5 Խորէն. Գիրք Բ. Գլ. ԿԳ:

Հայոց չափազանց ու յուսահատ տրտմութիւնն անբնական բացատրութիւններու կը դիմէր։ Արդէն Հոմերոսի Իլիականին մէջ մեռելը գորգի վրայ կը դրուի. մէկ դիէն արք գլուխնին մոխիր՝ գետնի վրայ ինկած կը թաւալին, մէկալ դիէն կանայք կուրծքերնին կը ծեծեն, այտերնին կը ցտեն, փետտած մազերնին ու կտրտած խոպոպիները ցուրտ դիոյն վրայ կը նետեն։ Հեկտորին դիոյն քով՝ երգիչներն աշխարող կանանց հետ ողբոց ձայները տալէն ետքը՝ Անդրոմաքէ իր էրկանը գլուխը ձեռուըներն առած՝ իրենց ձայներուն արձագանգ կ'ըլլայ, ու մէկալ կանանց ողբերուն՝ առաջնորդ (մայր ողբոց)։ Աս նկարագիրը կարծես թէ Փառանձեմայ՝ Գնելայ դիակին քով ըրածներուն նախատիպն է[1]։ Հայաստան ալ շատ կանուխ յատուկ երգեցկաց դասեր ունէր՝ եղերամարք կամ ձայնարկուք ըսուած (կուսանք ու կանայք), որոնք սեւեր հագած իբրեւ թէ դիահանութեան անհրաժեշտ ապասահարկութիւն մը կ'ընէին իրենց կեղծեալ եւ ցաւալի ծափահարութեամբն ու արուեստական ողբերովն[2]։ Այսոնց երգերուն կամ մրմունջներուն[3] նիւթը՝ վախճանելոյն հասակը, կեանքը, զանազան ընտանեկան յարաբերութիւնները, մահուան կերպն ու աւիթը կու տար, եւ անանկով գրեթէ փոքր վիպասանութիւն մը կը շինուէր[4]։ — Քրիստոնէութիւնը՝ որն որ ցանկութեանց մանաւանդ սանձ քան թէ ճարակ կը հոգայ, շատ իրաւամբ աս քնարական երգերուն ծուռ աչքով պիտ'որ նայէր։ Նոյն տեսակ երգեր էին՝ որոնցմով անցած դացած հե-

1 Փ. Բուզ. Դ. Դպր. Գլ. ԺԵ։

2 Խորեն. Գիրք Բ. Գլ. Կ։ Փ. Բուզ. Ե. Դպր. Գլ. ԼԱ։ Կոծ, աշխարան, ողբք, ոճիրք լալեաց ըսուած — κοπετός, ὀδυρμός, θρῆνοι.

3 Nenia

4 Փ. Բուզ. Դ. Դպր. Գլ. ԺԵ։

թանոսութիւնը մէկ ու կէս դար խոկ եաքը նորէն Հայաստան բերելու աշխատեցաւ[1]: Եկեղեցւոյ կարգերը գործնականապէս աւելորդ ըրած էին ձայնարկուաց խումբը՝ պաշտօնէից գնդովն ու իրենց ծանր սաղմոսներովն ու օրհնութիւններովը: Սակայն հարկ կար որ դեռ շատ ատեն թէ եկեղեցական օրէնսդրութիւնն ու սովորութեան դէմ օրէնքները կրկնէր[2], ու թէ բեմէն ստէպ յարութեան յոյսը քարոզուէր[3]:

Բուն բանագործական բանաստեղծութիւնը[4] ինչպէս իրենց դրացի Պարթեւաց մէջ, ասանկ ալ Հին Հայոց մէջ հայրենական ու բնիկ չէր: Ստոյգ է՝ հինգերորդ դարուն վերջի կիսոյն մէջ թատերաց ու թատերական գուսանաց դէմ պատուէրները[5] յայտնի կը ցուցընեն թէ նոյները Հայաստան ալ ըլլան, բայց հարկաւ կամ խաղացողները յոյն էին, եւ կամ 100 տարիէ մ'ի վեր Յունաց ձեռքն եղած Հայաստանի արեւմտեան մասին մէջ տարածուած էին:

### Գ. Ընկերող նուագարաններ:

Թէ վիպասանական ու թէ քնարական բանաստեղծութեանց հետ՝ կենդանի ձայնէն զատ գործիական ընկերութիւն[6] մ'ալ անբաժին էր: Հին Հայոց ամէն երաժշտական կամ գուսանական գործիքներուն (նուագարաններուն) ճշդիւ ինչ ձեւ ունենալը ճանչնալ՝ կարելի չէ: Յունաց քանդակագործութեան գեղեցիկ յիշատակարաններն ու նկարապաճոյճ խեցեղէն անօթները չունինք կամ դեռ մեր տեսութեանը չէ հասած, որ մարմարեայ մուսայից ձեռքի նուագարանները կամ ընտանեկան երաժշտութեան

1 Եղիշէ, Պատմ. Վարդ. Գ. էջ 108:
2 Փ. Բուզ. Դ. Դպր. Գլ. Դ: Կանոնագիրք՝ ստէպ:
3 Յովհ. Մանդակ. ստէպ:
4 Dramatique.
5 Յովհ. Մանդակ. Ճառ. Ժէ:
6 Accompagnement.

գործիքները դիտենք։ Սակայն ընդհանուր որպիսութիւնը նաեւ առանց ասոնց կրնայ ճանչցուիլ։ Հնոց երեք տեսակ գործիքներն ալ Հին Հայոց ծանօթ էին, որովհետեւ փչողական, լարական ու թնդական գործիքներ ունէին։ Փող՝ եղեգնեայ (առանձին կամ շատն իրարու հետ կապուած այլեւայլ ձայնի աստիճաններով՝ իբրեւ երգիոն)[1], (հաւանականաբար նաեւ) եղջերեայ ու պղնձի[2]. փռիւգացի սրինգն իրենց դրացի ազգէն կրնար դիւրաւ գալ։ Աղեաց նուագարաններ էին՝ քնար, ջնար, տաւիղ, փանդիռն, վին ու հաւանականաբար՝ միայն Խորենացւոյն քով յիշուած ու վիպասանական երգերու ատեն գործածուած բամբիռն՝ որն որ վերիններէն մէկուն հետ նոյնանշան պիտ՚որ ըլլայ ու իր արմատն ալ Փիլոնի թարգմանութեան բամբիռն բառին մէջ եղած կ'երեւայ, ուստի եւ բարձրկեկ (բամբ = պարսկ. բամ) ձայն մ'ունեցող աղեբախ նուագարան մը պիտ'որ ըլլայ։ Հարկաւ ասոնց շատն ինչպէս անուամբ՝ ասանկ ալ կամ աղեաց թուով կամ կազմուածքին ձեւովն իրարմէ տարբերութիւն մ'ունէին։ Ծնծղայ ու թմբուկ գրեթէ միշտ յիշուած նուագարաններուն արբանեակներն էին[3]։ Իսկ Հին Հայոց ձայներուն կամ դաշնակաւորութեանց[4] կամ գեղգեղանաց ինչ չափ ու ինչ կերպ ունենալուն՝ ո՛վ կրնայ լոյս տալ, ուր որ Յունացն անգամ աղէկ ճանչցուած չէ։ — Ամէն երեւելի առթից մէջ դուսանութեան կամ երաժշտութեան դուսար՝ Կաքաւքիչ շատ արուեստական եղանակաւ մը կ'ընկերանար, երբեմն առանձին իբրեւ կաքաւք, կայթք կամ վազք, երբեմն բազմութեամբ իբրեւ պար կամ պարանցիկք[5],

1 Մամբր. Ճառ ի յար. Ղազարու։
2 Խորեն. Գիրք Բ. Գլ. Կ։
3 Վերը յառաջ բերուած տեղերը։
4 ʽΑρμονία.
5 Ագաթ. ժէ։

*եւ որն որ զարմանալի է՝ նաեւ եղերամայրք իրենց սեպհական տրտմալի կաքաւուն եւ պարուց տեսակն ունէին* [1] ։

Դ. Երգոց արտաքոյը, հոգին ու մարմին։

*Հին երգերնուս ժամանակներն, հեղինակներն ու զանազան տեսակները քննելէն ետքը՝ պէտք է որ անոնց արտաքոյն ալ դիտենք։ Թէ որ՝ ինչպէս մինչեւ հիմա սովորաբար կ'ըլլար, զմեզ աս երգերուն ու երգիչներուն ժամանակին ու պարագայից տանելու տեղ՝ զիրենք մեր ժամանակին ու պարագաներուն բերենք, այս ինքն՝ մեր հնոց բանաստեղծութիւնը մեր հիմակուան ճաշակովն ու արուեստովը դիտել ու դատել ուզենք, եւ կամ Յունական-Հռոմէական բանաստեղծութեան ու նոյն իսկ նոր պարսկային բանաստեղծութեան հետ միշտ համեմատութեան խոլթենք, հարկաւ ոչ իրենց ճշմարիտ հոգւոյն կը թափանցենք եւ ոչ իրենց սեպհական եղած արուեստը կ'իմանանք։*

*Ստուգիւ շատ ծանր ականջ, շատ բութ զգայութիւն պիտ'որ ունենայ աս երգոց իրենց նախնական կերպարանաց մէջ մնացած հատակտորները կարդալէն ետքը՝ իրենց վրայ արձակ խօսքէ զանազանութիւն մը չտեսնողը։ Բայց զիրենք ասանկ արձակ խօսքէ որոշող տարբերութիւնն ի՞նչ է։ Շատերն երբեմն ասանկ ու երբեմն անանկ տաղական արուեստ մը նշմարել ուզեցին։ Բիրտ մտածութիւն մը կ'ըլլար տանց վրայ (Արաբացւոց) նոյնաձայն վերջերն (յանգերը) փնտռել՝ կամ ամբողջ վանկերով եւ կամ պարզապէս ձայնաւորներու նոյնութեամբ, կամ թէ Գերմանացւոց Հիլդեբրանդեան հին երգին մէջ դիտուած՝ տողի մը զանազան անդամոց սկզբնական վանկերուն նոյնաձայնութիւնը։ Բայց իրօք ուրիշ փորձերու ձեռք զարնուեցաւ. երբեմն վանկերու քըն-*

1 Փ. Բուզ. Ե. Դպր. Գլ. ԼԱ։

Ու նոյնաթիւ համրանքովն յափշտակուելով ու անոնց համեմատ տողերու կտրատելով, եւ երբեմն ալ դրութեամբ ալ չյագած՝ Յունական կամ Հռոմէական չափերուն դիմեցին, այս ինքն՝ երկայն ու կարճ վանկերու համեմատութիւններով լուծում մ'ուզեցին գտնել. վերջապէս ասկից ալ դատարկ ելլելով՝ քիչ մնաց որ ա՛լ բացայայտ ան երգերուն մասնաւոր արուեստն ու արձակ խօսքէ ունեցած տարբերութիւնն ուրացուէր։

Բայց աս աստիճանի յոյսերնիս չէինք կորեր՝ թէ որ աս հնութեան նկարը՝ ճշմարիտ դիրքէն դիտէինք։ Աս դիրքը միջին Ասիան եւ ի մասնաւորի Հին Ասիան էր։ Բանաստեղծութիւնն Յոնիայի մէջ յանկարծ չբուսաւ. ինչպէս յունական ազգը պատմութեան անդրանիկ ազգը չէ, անանկ ալ իր կրթութիւնն առանց ենթադրութեան ու բոլորովին սկզբնական չէ։ Ուստի բոլոր Ասիայի կամ գոնէ միջին Ասիայի հետ՝ Հայք ալ բանաստեղծութիւն մ'ունեցան, որն որ թէ՛ ընդհանուր եւ թէ՛ ազգային բանաստեղծութեան պատմութեան մէջ առջի շարքն ու առջի օղն է։ Աս նախնական ասիական բանաստեղծութիւնն հետագաներէն զանազանող նկարագիրն ան է՝ որ ասիականին վրայ դեռ բնութիւնը շատ տիրող է, որուն հակառակ՝ վերջնոց վրայ արուեստն՝ որ բնութեան նախանձորդն է, զօրացած ու տիրապետած է, թէպէտ մէկալ կողմանէ՝ ո՛չ ասոնք բնութիւնը բոլորովին թողուցած են եւ ո՛չ անոնք արուեստը։ Միջին Ասիայի ազգերուն մատենագրութեան գլխաւոր երեւեցուցիչն Եբրայեցւոց ազգին յաւիտենական մատեաններն են։ Հին արեւելեան մատենագրութեան պատմութեան մէջ մեծ ու պատուաւոր սպասաւորութիւն մ'ըրած կ'ըլլան Հայք՝ թէ որ իրենց հին մատենագրութեան հատակտորներն եբրայական գրոց՝ նաեւ ակար արձագանգ մը

կամ աղքատ յաւելուած մ'ըլլան: Իրօք ալ՝ ինչպէս քանի մը բանի մէջ արդէն ակնարկեցինք, ու ետքը աւելի ծանրակշիռ նիւթի մէջ ասոր մտադիր ըլլալու առիթ կ'ունենանք, աս երկու ազգին բանաստեղծութեանը մէջ անանկ արտաքոյ նոյնութիւն մը կը տեսնուի, որուն հասարակաց աղբիւրը՝ միայն հնութիւնն ու բնութիւնը կրնայ ըլլալ: Որչափ նիւթոյ ու քանակութեան կողմանէ[1] իրարմէ հեռու են, այնչափ իրենց արուեստին մէջ եղած միաբանութիւնը զարմացուցիչ է. այս ինքն՝ որ այսչափ տարբեր նիւթի մէջ, այսչափ պզտի կտորներու վրայ՝ այնչափ շատ ու ստէպ նմանութիւն գտնուի, կամ եբրայական նկարագիրը՝ բանաստեղծութեան գրեթէ ամէն կանոններուն անոնց վրայ երեւայ:

Հին ասիական բանաստեղծութեան արուեստին ջղերն են՝ Չափականութիւն կամ Թուականութիւն[2] ու Համեմատականութիւն[3]: Չափականութիւնը, այս ինքն՝ խօսքին թիւը, չափակցութիւնը կամ քայլը, հին քերթուածի մը շարժում տուողն էր: Շատ հաւանական կ'երեւայ որ Խորենացւոյն ասերգերը՝ Բուեկէոյ երգ կանչելուն ալ հիմն՝ նոյն թուականութիւնը կամ չափականութիւնն ըլլայ: Որովհետեւ իսկզբանէ բանաստեղծութիւնն երաժշտական կամ դուսանական արուեստի հետ կապուած էր՝ պէտք էր որ ինքն ալ չափով մ'ընթանար, եւ աս չափն իւրաքանչիւր նիւթին համեմատ խօսքի ներդաշնակաբար սահուն ընթացք մը, հոսում մ'ունենար: Աս չափականութեան կամ թուականութեան գլխաւոր կերպն է՝ մէյ մ'ըսուած բացատրութիւնը հետեւեալ բացատրութեան մէջ

1 Հին կտակարանն ըստ նիւթոյն՝ պատմական, բանաստեղծական ու մարգարէական կը բաժնուի, եւ հետեւապէս՝ միջին մասը Ս. Գրքին մէկ մեծ կազմիչ մասն է:

2 Rhythme

3 Parallélisme.

նոր դարձուածով մը կրկնել առանց իմաստին կա-պակցութիւնը խզելու, բայց միանգամայն ընթաց-քին մէջ նոր բառեր ու նոր իմաստներ առջիննե-րուն հետ հիւսել. անանկ՝ որ աս աստիճանաւոր կարգաւորութեամբ կապակցեալ խօսքերը կարծես թէ կոհակաձեւ եռեւէ եռեւ կը ծփան ու իրար դէպ առաջ կը քշեն՝ մինչեւ որ որոշեալ ամբողջու-թեան մը հասնին: Այսպէս է ունեցած հատակտո-տորներնուս մէջէն ամենէն մեծն ու անարատը՝

Երկնէր երկին եւ երկիր,
Երկնէր եւ ծիրանի ծով,
Երկն ի ծովուն ունէր զկարմրիկ եղեգնիկն.
Ընդ եղեգան փող ծուխ ելանէր,
Ընդ եղեգան փող բոց ելանէր.
Եւ ի բոցոյն պատանեկիկ վազէր[1].
Նա հուր հեր ունէր,
Ապա թէ բոց ունէր մօրուս՝
Եւ աչկունքն էին արեգակունք[2]:

Նոյն դաշնակաւոր կրկնութիւններն ու աստիճանաւոր իմաստի յառաջադիմութիւնը, որչափ Եբրայեցւոց գրքերուն սկզբնագրին մէջինը չէցուցուիր ալ նէ՝ կ'իմացուին՝ Կարմիր ծովէն անցնելէն ետքը Թմբկօք ու պարուք երգուած օրհնութենէն՝

. . . "Աջ քո Տէր փառաւորեալ է զօրութեամբ իւրով — աջ քո Տէր խորտակեաց զթշնամին . . . Հողմով

1 Աս տաղը մէջ ու Նօփրաքէր օրինակէ մը Ամստերտամ 1695ին Թովմաս Վանանդեցւոյն հոգաբարձութեամբը տպուած Խորենացւոյն մէջ, եւ նոյն տպագրութեան վրայ Վենետիկ 1752ին Սարգիս արքեպիսկոպոսին հոգա-բարձութեամբը տպուածին մէջ է Եւ ի բոցոյն վազէր խարտխուշ պատանեկիկ. թէպէտ աս ընթերցուածին հարա-զատութեան երաշխաւորութիւն չեն ի տար ոչ Վենե-տիկի նոր զգուշաւոր տպագրութեանց ձեռագիրներէն գոնէ մէկը եւ ոչ նոյն իսկ խօսքին շարքը:

2 Խորէն. Գիրք Ա. Գլ. ԼԱ:

սրտմտութեամբ քով պատառեցան ջուրք — պաղեցան որպէս պարիսպ ջուրք — պաղեցան ալիք ի մէջ ծովուն . . . Լուան ազգք եւ բարկացան — երկունք կալան զբնակիչս Քանանացւոց — յայնժամ տագնապեցան դատաւորք Եդովմայ եւ իշխանք Մովաբացւոց — կալաւ զնոսա դողումն — հալեցան ամենայն բնակիչք Քանանացւոց„[1]:

ինչպէս նաեւ Դեբովրայ օրհնութենէն՝

"Լուարուք թագաւորք եւ ունկնդիր լերուք նախարարք — ես Տեառն երգեցից — եւ սաղմոս ասացից Աստուծոյ Իսրայէլի: — Տէր յելանել քո ի Սէիրայ — եւ ի չուել քում յանդաստանացն Եդովմայ — երկիր շարժեցաւ — եւ երկինք խռովեցան — լերինք շարժեցան յերեսաց Տեառն Եղովայ Սինայի — յերեսաց Տեառն Աստուծոյ Իսրայէլի: . . . Կապուտ երանգոցն Սիսարայ — կապուտ երանգոցն գունագոյն նկարուց — նորա պէսպէս նկարուց, այն էր պարանոցին նորա կապուտ: . . . Հեղեղատն Կիսոնի մերժեաց զնոսա — հեղեղատն Կադեսիմայ, հեղեղատն Կիսոնի„[2]:

Վերջի տողերը մեր հատակոտորներէն ուրիշ հատակոտոր մը կը յիշեցընէ, որն որ ոչ առջինին մեծութիւնն ունի եւ ոչ նոյն աստիճանի անարատութիւն, այս ինքն՝

Հատուած գնացեալ Վարդգէս մանուկն ի Տուհաց
գաւառէն զՔասաղ գետով,
Եկեալ նստեալ զՇիրեղ բլրով, զԱրտիմէդ քաղաքաւ, զՔասաղ գետով,
Կռել կոփել զդուռն Երուանդայ արքայի[3] . . . :

Այն ասիական բանաստեղծութեան Չափականութեան բուն ոյժը՝ Համեմատականութեան վրայ է, որն որ ուրիշ բան չէ բայց եթէ մէկ գլխաւոր իմաստ կամ մտածութիւն մը բացատրող երկու կամ շատ նախադասութեանց կանոնաւոր կապակցութիւնն ու

1 Ելք, ԺԵ.
2 Դատ. Ե:
3 Խորեն. Գիրք Բ. Գլ. ԿԵ:

շարքը։ Հին արեւելեան բանաստեղծները խօսքի երկայն շրջաններով (պարբերութիւններով) խօսելու սովորութիւն չեն ցուցըներ, հապա հասարակօրէն կարճ վճռական նախադասութիւններ կը գործածեն։ Բայց որպէս զի աս նախադասութիւնները միօրինակութեամբ ձանձրութիւնը չյոգնեցընեն, զանոնք յօրինաւոր[1] համեմատութեամբ մը իրարու հետ կը հիւսեն։ Ասանկով այլեւայլ նախադասութիւններ բոլոր խօսքին նկատմամբ մէյմէկ անդամ կ'ըլլան։ Հասարակօրէն երկու երկու իրարու քով կը լծակցին, երբեմն ալ երկուքին մէջ ուրիշ անդամ մը կ'իյնայ՝ որ ետքէն չորրորդ անդամին հետ կը համեմատի. բայց ամենէն յաճախն երկու անդամներուն կապակցութիւնն է, որն որ մեր աչքի մեծ հատակոտորին վրայ կ'երեւայ։ Աս անդամներն իմաստին կողմանէ կամ հակադրական եղանակաւ կը կապուին, այս ինքն՝ երկու հակառակ նախադասութիւն մէկ ամբողջ իմաստ կ'ակնարկէ, որն որ առակաց մէջ ստէպ կը պատահի, ինչպէս ուրիշ անդամ յիշուած շատակերի առակին վրայ մեզի համար ալ օրինակ մ'ունինք, եւ կամ բաղադրական, այս ինքն՝ երկու նախադասութեան մէկ ամբողջ իմաստի բաժանեալ մասունքը կ'ըլլան, յաջորդը նախորդին շարունակութիւնը կ'ըլլայ, բայց շատ անգամ աս շարունակութիւնը հաւասարազօր անդամներով կ'ըլլայ, անանկ որ երկու նախադասութիւնն ալ նման իմաստ ու մտածութիւն կ'ունենայ պզտի փոփոխութեամբ մը։ Բաղադրականն ու Հաւասարազօրն աղէկ կ'երեւան աս դաշնակաւոր ու անարատ պահուած տողերուն մէջ

Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն Արտաշիսի,
Տեղայր մարգարիտ ի հարսնութեան Սաթինկանն[2]։

1 Systématique.
2 Խորեն. Գիրք Բ. Գլ. Ծ։

Թուականութիւնն ու Համեմատականութիւնը՝ Հայոց հին տաղական արուեստին երկու գլխաւոր օրէնքները՝ նոյն հին արուեստին ու հիմակուանին մէջ՝ բաց յայլոց ան էական զանազանութիւնը կը հիմնեն՝ որ հինին մէջ տիրողը՝ նոյն ատենուան մարդկան իմաստն ու մտածութիւնն էր, իսկ ասոր հակառակ վերջինին մէջ ձեւը շատ կը տիրապետէ ու մարդուս մտածութիւնները շատ անգամ Պրոկրուստէսի երկաթի չափերուն կը յարմարցուին [1]: Սակայն հիներուն ազատութիւնն ալ բոլորովին անկոպար չէր: Ինչպէս հնոց աս կերպ երգերուն վրայ՝ նոյնպէս մերիններուն վրայ ալ կայ Ել եւ Էջ մը կամ Ամբարձում ու Նուաճում [2]: Ստուգիւ աստիճանաւոր հընչում մը՝ որն որ արդէն գոնէ տեղ տեղ մեր հատակոտորներուն վրայ բաւական զգալի է, հարկաւոր էր մէկ կողմանէ քերթուածն արձակ խօսքէ ընտրելու եւ մէկալ կողմանէ նուագարանաց ելեւէջին, կաքաւուց եւ պարուց յարմարելու համար: Ասանկով հարկ էր որ վանկերու քանակական չափ մ'ալ գոնէ երբեմն մտնէ: Իրօք՝ թէ որ աղէկ մտադրուի՝ քանի մ'անգամոց մէջ գտնուած չէ թէ մինակ բառերու հապա նաեւ վանկերու հաւասարթիւն առանց դիտման եղած չ'երեւար: Թէ որ մէկ անգամ իրեն համապատասխանող անգամոյն մէջի վանկերէն թուով աւելի վանկ ալ ունենայ՝ շատ հիմ կայ կարծելու՝ որ ինչպէս երգի մերձեցուած ատեն, ատանկ ալ պարզ արտասանութեան ատեն շատ վանկեր մէկու կրնար ամփոփուիլ, մէկ վանկն ալ քանա-

1 Յունաց առասպելը կ'ըսէ որ Թեսէոսի Ատտիկէէն անհետ ըրած հուղկահարներէն մէկն ալ Պրոկրուստէս էր, որն որ անցնող դարձողը կը բռնէր, կարճ մարդն երկայն երկաթի անկողնոյ վրայ քաշելով կ'երկընցընէր, երկայն մարդն ալ կարճ երկաթի անկողնոյ վրայ տարածած վերէն վարէն աւելորդը կը կտրէր:

2 Ἄρσις καὶ θέσις, arsis et thesis.

կապէս կրնար սատակացուիլ։ Տարակոյս չկայ որ աս վերջի գործողութեան հիմը՝ մեր ձայնաւորաց քանակականութիւնն (երկայն ու կարճ, գուցէ նաեւ միջին ունենալն) է. բայց ի՞նչ ընդդիմութիւն կայ աս քանակականութեան գործածութիւնն այսչափ հին ատենուան մը համար ենթադրել, երբոր նոյն քանակականութեան գոնէ գոյութիւնը դեռ հինգերորդ-դարուն սկիզբն անժխտելի եղանակաւ կը ցուցուի[1], թէպէտ եւ աս բանս մեր հիմակուան ազգային բանասիրական ծանօթութեանց չափոյն նայելով՝ մեզի Գորդեան հանգոյցն է։

Դարձեալ՝ արուեստի կողմանէ նայելով՝ չէ թէ միայն բնական էր որ աս զանազան ժամանակ շինուած երգերն այլեւայլ քերթողներու մտքէ ելած ըլլալուն՝ աս կտորը մէկալ կտորէն աւելի լեցուն, աւելի քաղցրահնչիւն եւ համեմատականութիւնն ու թուականութիւնն աւելի կոկիկ ըլլայ, հապա նաեւ պատմուած նիւթին համեմատ՝ օրինակի աղագաւ վեհ անձի մը շարժմանը կամ քաջութեան գործքի մը, երագութեան կամ հանդարտութեան, բարկութեան կամ հեզութեան՝ արուեստն ալ պատասխանէ։ Հետեւեալ մանր մանր բառերէ շինուած, ատէպ շեշտուած ու կտրուկ մնացած հատուածը՝ Բ. Արտաշիսի բերանը դրուած անէծքն է, որով իր ժառանգ որդին ու յաջորդը կ'անիծանէ.

Եթէ դու յորս հեծցիս յազատ ի վեր ի Մասիս,
Զքեզ կալցին քաջք, տարցին յազատ ի վեր ի Մասիս.
Անդ կացցես եւ զլոյս մի տեսցես[2]։

Մինչուկ հիմա ըսուածներով երբեք ան դիտուած չէ՝ որ ասոնց համեմատ տաղեր կամ երգեր շինուէին։ Մէկ կողմանէ առջեւի օրինակներնուս քիչութիւնը, մէկալ կողմանէ մեր վանքերուն քանակական չափե-

1 Տես Կորիւն, Վարք Ս. Մեսր. եջ. 10։
2 Խորեն. Գիրք Բ. Գլ. ԿԱ։

րուն դեռ անտեղեակ ըլլալնիս աս նմանողութիւնը շատ դժուարին կ'ընեն։ Սակայն տաղանդաւոր մէկն առնց չէ թէ մինակ յօրինման եղանակին հապա նաեւ բանաստեղծական ու բանասիրական հոգւոյն ազէկ մը թափանցելէն ետեւ՝ ունեցած պզտի հատուածներնուս ոճովը պզտի երգ մը գրելու ըլլայ, յանդուգ փորձ մը չըլնելէն զատ՝ կարծենք որ գուցէ կրնայ հասարակաց հաճութեան ալ բանաւոր յոյս մ'ունենալ։ Մեր հին երգերն աս կերպով ըմբռնած՝ մեր ազգային բանաստեղծական արուեստին պատմութեան մէջ առջի օղակն են. աս օղակը՝ նորերս շատ յաճախ գործածութեամբն իրաւամբ ձանձրալի սեպուած ճիշդ ու միօրինակ հաւասարաթիւ տաղաչափութեան հետ՝ ան տաղաչափութեան միջնորդութեամբը կը կապուի, որն որ աս երկուքին մէջտեղը կրնայ սեպուիլ՝ չէ թէ մինակ ժամանակին կարգաւը, հապա նաեւ բուն ներքին յատկութեամբն՝ որ կէս մ'առջիններին ու կէս մ'ալ վերջիններին նկարագիրն ունի։ Աս միջին տաղաչափութեան վրայ՝ որուն յարգն իր բաւական պատկառելի հնութեան մէջն է, իր սեպհական տեղն առիթ կ'ունենանք խօսելու։

Նոյն երգերուն արուեստէն զատ՝ բանաստեղծական զարդերն ու հոգին ունին բան՝ որ մեր հինակուան ճաշակին համաձայն ըլլայ եւ ունին բան ալ՝ որ անկից հեռու։ Հայ բանասէր մը չի կրնար առանց հաճոյական ճաշակագէտ զգացման լսել ան նաեւ իրենց բուն ամբողջէն քակուած ու քայքայուած խօսքերն ու բառերը, օրինակի աղագաւ՝ Ոլանէ Ղամբրամայ — կոտել կոփել [1] ըլլառան Երուսաղայ — տենչայ Սաղինէկ տեկէն տենչանօ ղարտախոյր խա-

1 Մարգարէութեանց Հայ Թարգմանչին ալ տեղ մ'այսպէս «կոտել կոփել ուան հարկանել» գործածելը՝ գուցէ առանց աս երգերէն յիշելու եղած չըլլայ. յունարէնը մինակ հարկանել ասան կ'ըսէ։ (Եսայ. ԽԱ. 7։)

տուրփ եւ ղուէց խատուրծէ [1], որոնց ամէն մէկն ընտիր բառեր են ու միայն վերջընթերը մեզի հիմա նշանակութեամբն անծանօթ է։ Ուրիշ հատուած մ'ալ՝ որ Մագիստրոս մեզի պահած է՝ աս վերջի ըղձման ձեւն ունի, եւ բառերուն ընտրանքն ու փափկութիւնն իրարու հետ կը մրցին.

Ո՞ տայր ինձ զծուխ ծխանի եւ զառաւօտն նաւասարդի,
Զվազելն եղանց եւ զվազելն [2] եղջերուաց.
Մեք փող հարուաք եւ թմբկի հարկանէաք [3]։

Աս հասարակ բանասիրական խնդրոց մէջ աս երգերուն լեզուն մեծ հեղինակութիւն ունի։ Օրինակի աղագաւ՝ թէ արդեօք մեր հինգերորդ դարուն մատենագրաց նորերս դիտուած երկու տեսակ լեզուին (ոչալէգդնէրուն) [4] որը նախնականն ու բունն է՝ որոշելու բաւական է, վասն զի ստուգիւ ան երկուքէն մէկուն բոլորովին արենակիցն է։ Բայց ասոնց ճիշդ բաղդատութիւնն ետքէն։

Առանձին արեւելեան կերպարանք մ'ունին պատկերներն ու նմանութիւնները։ Պղտի նմանութեանց բառերը կամ խօսքերն ան աստիճանի յղկուած ու

1 Խատուրփ ու խատուրծէ աս երգերէն դուրս միայն երկ'երկու ընդունելի տեղեր գործածուած տուղէ կուրփէ ընտիր բառեր են։

2 Աս բայն ալ երկու սկզբնական տեղ կայ. մէկ մը առ Եզնկայ (էջ 18), մէկ մ'ալ Ագաթանգեղոսի յառաջաբանին մէջ իբրեւ վորգէն օտ. բայց աս վերջինը մեր երկաթագիր կրկնագիր օրինակինն է, որուն ուղղութեանը վկայ կ'ըլլէ Յովհան կաթողիկոս՝ որ Ագաթանգեղոսէն առած՝ վորգէն օտ կ'ըսէ, ուր որ Ագաթանգեղոսի Փարիզեան օրինակին մէջ վորէն օտ է։ Ծխանն ալ աս երգերէն դուրս ապահով տեղ մը միայն նոր գտնուած Սիրաքայ բուն հին թարգմանութեան ծխահան բառէն գիտենք։

3 Վերջի տողին գոնէ անարատ մնացած ըլլալուն երաշխաւոր կենալ չենք կրնար։

4 Տես Նկարագիր ուսմ. ի Հ. Մատաթիա Վ. Գարագաշ. էջ 30—39։

գեղեցիկ են, որ Յունաց ու Հռոմայեցւոց նոյն տեսակ զարդերուն հետ համեմատուելու կու գան. Ծիրանի ծովը գրեթէ Վիրգիլիոսի սիրական purpureus վերադիրը կը յիշեցնէ. սեաւ՝ Արտաշիսի սեւ ձին կը նշանակէ: Բայց սա երգերուն մէջ բուն Նմանութիւնն, այս ինքն՝ անանկ համեմատութիւն մը՝ որուն մէջ երկու իրաց իրարու ունեցած նմանութիւնը խօսքին մէջ բացայայտ նշանակուի՝ ինչպէս է սա

Եւ անցեալ իբրեւ զարծուի սրաթեւ ընդ գետն

տողը՝ փոխաբերութեան նայելով շատ քիչ է: Փոխաբերութիւնն[1] ու Այլաբանութիւնք[2] արեւելեան բանաստեղծութեան շունչն ու հոգին է: Փոխաբերութեամբ՝ որուն մէջ նման իրը բոլորովին նմանցուածին տեղը կը գործածուի, կ'ըսեն մեր հատակոտորները՝ տեղ ոսկի, կամ տեղաց մարգարիտ (այս ինքն՝ անձրեւի պէս վերէն թափած ոսկի դահեկան, կամ անձրեւի պէս մարգրիտ կ'իջնայ), վիշապազունք զԱրտաւազդ առին եւ դեւ-փոխանակ եդին (այս ինքն՝ զգաստ մանուկը մոլի ըրին) եւ այլն: Բայց բուն այլաբանութիւնները՝ որոնք փոխաբերութեանց շարունակուածը կամ ընդարձակ ու մանր նկարուած փոխաբերութիւններ են՝ ինչպէս ամէն արեւելեան նոյնպէս մեր հին երգերն արեւմտեանց բանաստեղծութենէն կը զատեն:

Աս տարբերութեան հիմն ուրիշ ներքին տարբերութիւն մըն է: Արեւելեանց ու անոնց հետ Հայոց երգերն ալ՝ որչափ որ շատ զարդարուած ըլլան, շինծու դէպքեր կամ առասպելաբանութիւններ չեն, հապա միշտ ու միայն պատմութիւն են՝ զանազան այլաբանութեանց գոյներով նկարուած: Ճշմարիտ բայց մերկ դիպուածը՝ զորն որ Յոյնք դէպքեր կորելով կամ կպցնելով զարդարեցին, արեւելից ու Հայոց բանաստեղծներն աւելի անարատ պահել ուզելով՝

1 Métaphore.
2 Allégorie.

այլաբանութեանց քողովը ծածկեցին։ Բայց որովհետեւ աս այլաբանութիւնները Ա. շատ մեծ ու խոշոր, Բ. շատ երկայն տարուած, Գ. իրենց ժամանակին ու տեղւոյն մերձաւոր բաներէն առնուած են ու Դ. նմանութիւնը բոլորովին իրեն փոխուած է, ինչպէս բաց ի այն Երկնէր Երկին հատուածէն՝ օրինակ կ՚ըլլայ հետեւեալ հատուածս ալ՝

Հեծաւ արի արքայն Արտաշէս ի սեաւն գեղեցիկ,
Եւ հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն,
Եւ անցեալ որպէս զարծուի սրաթեւ ընդ գետն,
Եւ ձգեալ զոսկէօղ շիկափոկ պարանն,
Ընկէց ի մէջք օրիորդին Ալանաց.
Եւ շատ ցաւեցոյց զմէջք փափուկ օրիորդին[1].

անոր համար շատ տեղ այն դիպաց վրայ ձգուած քողերը՝ մեզի համար մտնելոց երիզապինդ կապանք են։ Թէ որ մասնաւոր մեկնութիւնը չունենայինք[2], ո՞վ կրնար ապահովութեամբ իմանալ որ ոսկէօղ շիկափոկ պարանը՝ կարմիր մորթոյ, լայքայի ու ոսկւոյ հրապոյրքն ու ձգիչ զօրութիւնը կը նշանակէ։ Ուստի ինչպէս յունական հին բանաստեղծութեան մէջէն զուտ դէպքը սուտ դէպքէն զատելը պատմաբանին դժուարին է, նոյնպէս արեւելեան այլաբանութեանց ալ առեղծուածները լուծել դիւրին բան չէ։

Մինչուկ հիմա ըսուածներէն Հայոց հին բանաստեղծութեան յարգին վրայ ան կը մնայ հետեւցընելու՝ զորն որ ընդհանրապէս արեւելեան՝ գլխաւորաբար հին բանաստեղծութեան համար ըսած է համբաւաւոր Շլեկել գերմանացին։ "Արեւելեան քերթուածները, կ՚ըսէ աս խորունկ պատմաբանն ու հնագէտ բանասէրը, գոյներու փայլունութեան, վեհութեան ու շքեղութեան կողմանէ Հոմերական քերթուածներուն կը հաւասարին, կամ կը գերազանցեն

1 Խորեն. Գիրք Բ. Գլ. Ծ։
2 Անդ։

ալ։ Հոմերականները նշանաւոր ընողն է ան ակն-երեւ բացայայտութիւնն ու ան մտաւոր ըմբռնման ամենապայծառ յստակութիւնն՝ որն որ անանել գողտր միամտութեան ու երեւակայութեան յորդ եւ զե-ղուն զօրութեանը հետ միաբանուած է,,։

Ե. Երգոց Նիւթը։

Մ՚եր հին երգերուն թէ հնոց ու թէ մեզի համար ունեցած օգուտն եւ պիտանութիւնը՝ միայն բանաստեղծութիւնն ու բանասիրութիւնը չվայելեր, հապա անոնցմէ աւելի իրական ուսմանց համար ալ մեծ նպաստ կրնանք յուսալ։ Թէ որ աս երգերուն ձեւն ու կերպը յիշեալ ուսմանց համար է, իրենց նիւթը՝ միայն պատմութեան ստացուածն է։ Պատ-մաբանն առանց արտաքին գեղեցկութեամբն ըմբռ-նուելու՝ ասոնց ներքին հիւթը կը փնտռէ, եւ այլա-բանութեանց քողերէն ազատած մերկ դէպքերն իրեն մէյ մէկ շահեր կը համարի, զանոնք այնչափ մեծ կը սեպէ՝ որչափ որ նոյնն ուրիշ կողմանէ ձեռք բերելու քիչ յոյս ունէր։

Որովհետեւ պատմագրի առջեւ՝ ստուգութիւնն ամէն բանէ վեր արժէք ունի, անոր համար աս եր-գերուն նիւթն ո՛ւսկից եւ ո՛ր կերպարանաց մէջ ձեռք բերած ըլլալն՝ իրեն անտարբեր բան չէ։ Աս դիտ-մամբ՝ հին երգերնուս նիւթերն ստուգութեան երեք աստիճան ունին։ Ա. Այն նիւթերը կամ դէպքերը՝ զորոնք պահուած հատակոտորներուն մէջ իրենց նախնական կերպարանօքը բառ առ բառ առջեւնիս ունենալով՝ ուրիշին վկայութեան կապուելու հարկ չունինք։ Բ. Այն դէպքերն՝ որոնք երգերուն սկզբնա-կան կերպարանօքը չունինք, հապա անոնցմէ հանե-լով ու պարզելով մեզի հաղորդուած են, եւ ասով առած ենք ուրիշին վկայութենէն կախում մ՚ու-նենալու։ Գ. Այն դէպքերն՝ որոնց համար ո՛չ եր-

գերուն սկզբնական կերպարանքն առջեւնիս ունինք եւ ո՛չ ալ ան երգերէն հանուած ըլլալուն բացայայտ վկայութիւն, հապա մեր քննութիւններն ու մակաբերութիւնները կը սկսին գործել՝ ջանալով որ նոյն երգերուն պատմածը գտնեն ան մատենագրաց մէջ՝ որոնք չէ թէ միայն նոյն երգերը կրնային գործածել, այլ նաեւ իրենց ընդհանուր ու անորոշ խոստովանութեանը համեմատ գործածած են՝ առանց բացայայտ ցուցընելու թէ ո՛ր մասնաւոր դէպքի նկատմամբ կը խօսին։

Յայտնի է որ աս տարանջատ երգերը գոնէ ըստ նիւթոյն սկզբնական ամբողջութեան բերել ուզողը՝ յոյսը գլխաւորաբար երրորդ կարգի դիպաց վրայ պիտի դնէ։ Աս գործքիս՝ որուն նպատակը պատուական եւ ըստ մասին յաջողութիւնն անգամ բաւական արդիւնք է, նորերս թէ՛ մտադրութիւն ու թէ՛ փորձ եղաւ։ Բայց աս հին երգերուն բոլորական վերակազմութիւնն այնչափ անյուսալի է՝ որչափ նոյն իսկ հին պատմագրութիւններս բոլորական ու լեցուն ամբողջ մ՚ըլլալէն կը պակսի։

Ի վերայ այսր ամենայնի՝ թէպէտ ան երեք կարգէն ունեցած նիւթերնիս ամէնքը միատեղ բոլոր կմախքը կամ բոլոր շէնքը չեն ցուցըներ, սակայն քանի մը նշանաւոր ոսկրոտիները կամ զոյգ մը գեղեցիկ ախաւեղագէսով սիւներ բաւական են համեմատութեամբ բոլոր մարմինը կամ ամբողջ շէնքն երեւցընելու։ Աս ձեռք բերուած տարանջատ պատմական նիւթերը՝ կարգին կողմանէ իրենց սկզբնական կերպարանացն այնչափ կը մօտենան՝ որչափ իւրաքանչիւր դիպաց ժամանակագրութեան համեմատ զետեղուելին։ Եւ որովհետեւ ասոնք մեր հին պատմութեան նկատմամբ յարգ ու աժէք ունին՝ նոյն պատմութեան բնական բաժանմանցը համեմատ՝ աս երգոց պատմական նիւթոյն պատկերը հանենք.

Ա. Ըուջի միջոցէն այս ինքն նահապետաց ատեններէն.

1. Խորենացին՝ Գորգի, Բանան ու Դաւիթ (կրնայ ստոյգ սեպուիլ որ Դաւիթ Անյաղթն ըլլայ) Յունաստան կրթուած Հայազգիներուն մէկուն բերնէն՝ Ողոմպիոդորոս յոյն փիլիսոփային՝ հին զրոյցներէն պատմածը կը բերէ, իբրեւ թէ Քսիսութրոս (Նոյ) Կորդուաց լերինքն իջնալէն ետեւ՝ իրեն Սեմ որդին քիչ մ՚ատեն Հայաստանի հարաւային արեւմտեան կողմը լերան մը ստորոտ բնակելով ու ետքն իր Տարբան որդին ընտանեօքն ան տեղերը մնալով՝ լեռը Սիմ ու գաւառը Տարաւն ըսուած ըլլայ, ինչպէս նաեւ նոյն Սեմայ Մարաստանի սահմաններուն վրայ առժամանակեայ ըրած բնակութեամբն ու որդիներէն մէկուն հոն հաստատուն բնակութիւն ընելովն՝ երկիրը (Սեմայ արեւելեան անունէն՝ Զրուանէն) Զարուանդ կանչուած ըլլայ։ Պատմագիրն աս զրոյցներն իրենց հաւանականութեան մէջ թողլով՝ աս կ՚աւելցընէ որ մեր հին երգերուն մէջ թէ ասոնք ու թէ ասոնց նմանները կը յիշուին[1]։

2. Նոյն մատենագիրն Արամայ դէպ արեւմուտք ու հարաւ ըրած արշաւանները պատմելէն ետքը՝ Մար Աբասայ բացայայտ խոստովանութիւնը կը բերէ, որով աս թագաւորական պատմագիրը նոյն դէպքերը սկզբնաբար (Հայոց) երգերէն առնուած են կ՚ըսէ[2]։ — Ահա նահապետական ժամանակաց պինդ առջի ու պինդ վերջի դէպքերը. միջին դիպաց համար ոչ բացայայտ վկայութիւն եւ ոչ կատարեալ ստոյգ ապացոյց ունինք՝ որ երգերէն առնուած մաս ունենան. սակայն թէ աս միջիններն ալ նոյն երգոց մէջ գոնէ ըստ մեծի մասին կային՝ գրեթէ անհակառակելի կերպով հաւանական ենթադրութիւն է։

1 Խորեն. էջ 42 — 44։
2 Անդ. էջ 75։

Բ. Երկրորդ միջոցէն, այս ինքն մէյ մը Ասորեստանեաց պետութեան տակ Հայկազուն կուսակալներու առենէն (— 600 նախ քան զՔր.), մէյ մ'ալ Մարաց պետութեան տակ՝ նոյնպէս Հայկազուն Թագաւորաց առենէն (— 530 նախ քան զՔր.) հետեւեալ դէպքերն ունինք.

3. Խորենացին Շամիրամայ Մարաստանի կուսակալէն յաղթուիլը, Հայաստան փախչելն ու հոն սպանուիլը պատմելէն ետքը՝ ուրիշ կերպ պատմող հեղինակի մը (Կեփաղիոնին) դէմ՝ մեր երգոց վկայութեան կը բողոքէ։ Աս երգերուն համեմատ՝ Շամիրամ կը ստիպուի ոտքով Հայոց կողմերը փախչելու՝ զորոնք երբեմն յաղթանակաւ կոխած էր, արեւելից աս մեծ Թագուհին ծարաւած ջուր խմելու կ'ըլլայ, բայց (Մար Աբասայ պատմութեան նայելով՝ իր Նինուաս կամ Զամեսիս որդիէն խաւրուած) սուսերաւորները վրայ կը հասնին. Շամիրամ իր յուռութները (Բզնունեաց) ծովը նետելով կը պոռայ "Ուլունք Շամիրամայ ի ծով,,. եւ վերջապէս քար կը դառնայ[1]։ Վերջի այլաբանական բացատրութիւնն՝ որ Շամիրամ քար է դարձեր՝ գուցէ իրեն Հայաստանի մէջ անմահ յիշատակ թողուցած Շամիրամակերտ քարակոփ Վանայ բերդը կ'ակնարկէ։ Թէ Շամիրամայ աս վերջին դէպքերը նշանակող տաղերէն վեր՝ նոյն տիկնոջ ու զգաստասէր Արային մէջ

1 Խորեն. էջ 89 — 90։ Հոս Խորենացւոյն "Շամիրամ քար առաջին քան զՆիոբէ,, ըսածը՝ երգին բառ առ բառ խօսքը պէտք չէ սեպել, հապա միայն Խորենացւոյն ըրած բաղդատութիւնը։ Նիոբէ՝ յունական առասպելաց մէջ Տանտաղոս Փռիգիայի Թագաւորին դուստրը՝ իր որդւոց ու դստերաց բազմութեան վրայ հպարտացած՝ Լատոնան արհամարհեց. անոր համար աս երկնից Թագուհին իր մէկ հատիկ որդւոյն Ապողոնին հրամայեց որ Նիոբէի զաւկըները նետահար սպաննէ. ասոր վրայ ցաւագին Նիոբէն քար դարձաւ։

անցածներն ալ եւ վերջնոյն եղերերգական մահը նոյն երգերուն մէջ կային՝ անտարակուսելի է[1]։

4. Երուանդ Սակաւակեաց Հայկազուն թագաւորին Վարդգէս քեռայրը՝ Վարդգէսի աւանը կը շինէ, ուստի որ ետքը Վաղարշապատ պարսպաւոր քաղաքն ելաւ։ Աս բանը պատմող երգոյն հատակոտորին մէջ՝ Հնախոյզ պատմագրին առջեւ մտադրութեան արժանի աս ալ կայ՝ որ հոն "Երուանդ արքայ,, կը կոչուի[2], որն որ խել մը պատմութեան հաստատութիւն է։

5. Ասոր որդին ու անմիջական յաջորդը՝ խարտեաշահեր, գունեան, մեղրաչեայ, ամրնեայ, Ռէկնաւէր, առոյգաճարպ ու գեղեցկոտն Տիգրան, ինչպէս վկայութենէ գիտենք, երգերուն մէջ իբրեւ ժուժկալ ու չափաւոր կը գովուի[3]։ Ո՞վ կրնայ մտածել որ երգերուն մէջ աս գովութիւնը բոլորովին կղզիացած էր առանց Տիգրանայ ուրիշ գործոց վրայ ձգուելու։ Սակայն Խորենացին Տիգրանայ՝ Աժդահակայ ընտանիքն ու ընտոծինները Հայաստան գաղթական բերելուն հաստատութիւն մը տալու համար՝ ստիպուած կ'երեւայ Հայոց վերջի երգերէն ան խօսքերը

1 Գրեթէ նոյնչափ անտարակոյս է՝ որ Շամիրամայ զԱրայ դիականց մէջ գտնել տալէն ետքը Արալեզներուն (կամ Առլեզներուն) լիզելովը կենդանացուցած ըլլալուն զրոյցը՝ Պղատոնի իր Հասարակապետութեան գրքին մէջ "Եր Հայուն,, վրայ յառաջ բերած զրոյցն է. իբրեւ թէ Պամփիւլիացի Եր անուամբ Հայը պատերազմի մը մէջ իյնալէն տասը օր ետքը դիականց մէջ մարմինն անարատ գտնուելով՝ երբոր խարուկի վրայ հանեցին որ այրեն, մէկէն տասուերկուերորդ օրը կենդանացաւ ու անդիի աշխարհքին բաները պատմելու սկսաւ։ Ասոր վրայ տես Պր. Մկրտչի Էմին Վէպք հնոյն Հայաստանի ընտիր գործքը, տպ. Մոսկուա, 1850, էջ 85 — 92, որն որ գրուածներնուս տպագրութեան ընթացքին մէջ ձեռքերնիս հասաւ։

2 Խորեն. էջ 297։

3 Անդ. էջ 109։

յառաջ բերել, որոնց մէջ Աժդահակայ սերունդը Վիշապազունք ու Վիշապք կը կանչուին։

6. Իր երրորդ որդւոյն՝ քաջ Վահագնի համար նոյն երգերը մեծ զարմացմամբ կը խօսին, աս դիւցազնին ծննդեան՝ երկինքն, երկիրն ու ծիրանի ծովն երկամբք բռնուած նկարագրելով, անոր համեմատ՝ քաջութեան գործքեր պատմելով, եւ ի մասնաւորի՝ այլեւայլ վիշապաց հետ կռուելն ու յաղթելը[1]։

Գ. Երրորդ միջոցէն, այս ինքն՝ Արշակունի թագաւորաց ատենուան դիպուածներէն.

7. Երգերը Տորք հայկազնոյն ուժեղութիւնը կը հռչակեն. որձաքար ու գեղ չունեցող վիմեր ձեռքն առած ճեղքելով ուզած մեծութիւնն ու չափը տալէն ետքն՝ ընդգամբքը նկարներ կը գծեր, կ՚ըսեն։ Անգամ մ՚ալ Պոնտոս Եւքսինոսի եզերքը՝ թշնամեաց նաւերուն հանդիպելով՝ ութ ասպարէզ հեռու բլրաձեւ քարեր ետեւնէն կը թաւալէ, ալեաց պատառուածն ու գիզուիլը նաւերուն կէսը կ՚ընկղմէ կէսն ալ իրենց նպատակէն հեռու կը քշէ կը տանի[2]։ Ինչպէս ուրիշ հեղ մտադրութեան հրաւիրած ենք[3], ասիկա Հոմերոսի իր Ոդիսականին մէջ կեկղոպեան Պողիւփեմոսի վրայ ըսածներուն շատ նման է։

8. Համեմատութեամբ ամենէն աւելի ընդարձակ, մանրամասն ու քիչ շատ կապակցեալ դէպքեր Արտաշէս Բ. թագաւորին ու իր որդւոցը վրայ ունե-

1 Խորեն. 126—127։ — Իսկ Շիրակունւոյն ըսածը՝ թէ հին Հայոց մէջ զրոյց ըլլայ՝ որ Վահագն ձմեռ ատեն Բարշամայ յարդը գողնալէն ետքը՝ ճամբան թափած մանր յարդերը Կաթին ծիրը չինած ըլլան, չէ թէ մինակ աս երգերուն մասը չէ, հապա եւ ոչ ալ շատ հին օչղբնոյան զրոյց մը կրնայ ըլլալ, որովհետեւ ժամանակագրական սխալով մը Վահագն ու Բարշամ Ասորեստանեաց նախնին մի եւ նոյն ժամանակի կը բերէ։

2 Խորեն. եջ 170, 171։

3 Տիեզերական պատմ. Տում. Ա. եջ 585։

ցած ենք։ Բացայայտ գիտենք որ երգերը կը պատմեն թէ Արտաշիսի Ալանաց ազգին հետ ունեցած պատերազմն Ալանաց Սաթինիկ օրիորդին Հայոց թագուհի ըլլալովը լմնցաւ, ու Արտաշէս՝ հօրը վարձանք տուաւ կարմիր մորթ, լայքա ու ոսկի, եւ (մեզի արդէն ծանօթ աւանդութեամբ մը) հարսանեկան խնճոյից տաճարին դրան առջեւ Արտաշիսի գլուխն ոսկի կը տեղար, Սաթինկան գլուխն ալ՝ սրսկապանին դրան քով՝ մարգարիտ։ Նոյն երգերն աս հարսանեաց պտուղն ու հետեւութիւններն անյիշատակ չեն թողուցած։ Արտաւազդ Արտաշիսի առջինեկ քաջ որդին Արտաշատ շինուելու ատեն իրեն յարմար բնակութեան տեղ չգտնելով, կ'ելլէ Մարաց մէջ (այս ինքն՝ Տիգրանայ բերած մարական գաղթականութեան մէջ) կ'երթայ. գուցէ ան ատենէն արքայորդին աս Վիշապազանց հետ գրգռութիւն մ'ունենալու կը սկսի, որուն վրայ Հայոց թագուհւոյն՝ Արգամայ (որն որ նոյն ազգին իշխանն էր) ունեցած կասկածելի հակումն ալ գալով, անանկ եղաւ որ աս հզօր գաղթականութիւնը բնաբարձ ջնջուեցաւ։ Օր մը, կ'ըսէ երգը, Արգաւան (Արգամ) խնճոյք տալով թագաւորական ընտանեաց՝ տաճարին (ճաշատան) մէջ թագաւորին ու իր ընտանեացը կենաց դաւաճանութիւն պատրաստած էր։ (Խորենացին պարզապէս Արտաշիսի որդւոցը, գլխաւորաբար Արտաւազդայ ոխութեանը կու տայ, որ ատանկ կասկած մը կեղծելով սեղանին վրայ աղմուկ հանեցին։) Երգերը պատմութիւնն առաջ տանելով շինծու աղմկին իրական հետեւութիւնը կը պատմեն, այս ինքն թէ Արտաշէս զԱրգամ բարձր (թագաւորէն ետքը՝ երկրորդական) պատուէն վար ձգեց, ու Արտաւազդ գնաց զօրքով զարկաւ, ջարդեց, Վիշապազանց շինուածներն այրեց մոխիր ըրաւ։ Բայց նոյն երգերը կը ցուցընեն որ ինչպէս Արգամայ բարձրագոյն պա-

տիւն՝ տասնեկ ալ ամէն մէկ արքայորդւոց ունեցած պատիւն ու իշխանութիւնն իրարու նախանձը կը շարժէր, գլխաւորաբար իրենց ամուսիններէն գրգռուած։ Նոյն իսկ իրենց հօրն երախտաւոր Սմբատ Բագրատունին՝ որուն ճիշդ նկարագիր մը կու տայ երգը[1], ալ իրենց նախանձէն ազատ չէր։ Բայց քիչ մը ետքը այս ծերունի զօրավարին յարգը ճանչնալու ստիպուեցան՝ երբոր Սմբատ անտանկալութեամբ եկաւ փրկեց զիրենք ան ատեն երբոր Հռոմայեցւոց զօրքը՝ ինչպէս երգը կ'ըսէ՝ Դոմետ անուն մէկու մ'առաջնորդութեամբ զիրենք նեղը խօթած էր[2]։ Արտաշէսի (գուցէ) իր որդէն պատմուած հիւանդութեանն ատեն կրած՝ Հայաստանի եղանց ու եղջերուաց որսի կարօտն ու վերջապէս յետին յուղարկաւորութեան ատեն պատմուած կանանց մահերն ալ երգերուն մէջ անյիշատակ չեն[3]։

9. Այժմ Արտաշէսի կենդանութեան եւ կամ Արտաւազդայ թագաւորութեան ատեն՝ Արտաւազդայ վրայ յարգութեամբ ու դոյլութեամբ խօսող երգերը՝ այս կարճակեաց թագաւորին մահուընէն ետքը՝ իրեն մոլի բարքը չեն ծածկեր ու պատճառը պզտիկուց Վիշապազանց ձեռք անկալը կը դնեն։ Իրեն վէհ իյնալով մեռնելն ասանկ այլաբանութեամբ մը կը նկարեն։ Արդէն ի բնէ ուրիշին փառքին նախանձոտ Արտաւազդը՝ հօրը մահուան ատեն եղած կամաւոր մահերուն բազմութիւնը տեսնելով՝ հօրն ետեւէն կանչեց որ Գացած ատենդ բոլոր երկիրս ալ հետդ տարիր, ես աւերակներուն ինչպէս պիտ'որ թագաւորեմ։ Իսկ Արտաշիսի ուրուականը տժգոհ որդւոյն վրայ անէծք կարդալով ըսաւ. Դուն ի Մասեաց լեռը ձիով որսի գացած ատենդ ոգիներն

1 Խորէն. Էջ 269։
2 Անդ. Էջ 275։
3 Անդ. Էջ 286 ու Մագիստրոսեան հատուածը։

գլխէդ պիտ'որ բռնեն, եւ այնպէս՝ անլոյս խորշերու մէջ պիտ'որ կենաս[1]։

1 Խորեն. 286։ Անկից ետքը Խորենացին Արտաւազդայ այրի մը մէջ շղթայակապ կենալը, շանց շղթաները կրծելը որ Արտաւազդ ազատելով ելլէ ու աշխարհքիս վերջ տայ, բայց դարբնաց կռանահարութեամբ շղթաներուն նորէն պնդուիլն ու նորոգուիլը, միայն իբրեւ զրոյց կը բերէ, չէ թէ իբրեւ երգին մասը, որուն ձայնակից է միանգամայն Եզնիկ (էջ 105)։ Բայց Եզնիկ ալ Հայոց զրոյցը քիչ մ'այլազգ կը պատմէ, այս ինքն թէ Արտաւազդ չէ թէ աշխարհքս աւրելու՝ հապա աշխարհքիս տիրելու համար պիտ'որ ելլէ։ Քրիստոնեայ Վրաց Ամիրանայ վրայ ունեցած զրոյցը՝ հեթանոս Հայոց Արտաւազդայ վրայ ունեցած զրուցին քիչ մը փոփոխուածն է։ Աս Վրաց զրոյցն առջի անգամ Պր. Մկրտիչ Էմին՝ վերը յիշուած գրուածին մէջ (էջ 41 — 42) ինչպէս որ լսած է, անանկ առանց այլայլելու մեզի կը հաղորդէ։ „Կնոջ յղւոյ ըմպեալ ասեն (Վիրք) յերկանց զճանապարհայն եւ ծնեալ զորդի՝ Ամիրան անուն, զոր եւ մկրտել կամեցեալ մօրն՝ շուարեալ մնայր առ ի չգտել ան ուրուք։ Եւ մինչ աա այսպէս ի խորհուրդս ծփայր՝ եկն եկաց յանդիման նորա ծերունի մի, որոյ տուեալ մանկան զկնիք մկրտութեան՝ խոստացաւ ըստ կամաց մօրն, խնդրել ի Տեառնէ վասն մանկան զզօրութիւն մեծ, որ եւ շնորհեցաւ նմա յԱստուծոյ։ Զարգացեալ մանկան՝ յաղթող երեւեցաւ յամենայնի՝ մեծամեծ շահատակութիւնս գործելով. գոռոզացաւ հպարտացաւ եւ զնոյն ինքն զԱստուած յանդգնեցաւ ի պայքար կոչել։ Ընդ որ պչարեալ Տեառն երկնից փակեաց զնա ի միում լերանց Կովկասու երկաթի շղթայիւք։ Սուր Ամիրանայ անկեալ գնի մեկուսի. եւ միայն շուն նորա հաւատարիմ լիզու անդադար զշղթայս առ ի ազատել զնա ի կապանաց։ Հսկայն անզեղջ անհամբեր մնայ գալստեան աւուրն, յորում ելեալ ի կապանաց՝ յագուրդ տայցէ վրէժխնդրութեան իւրում։ Սակայն այլ է վճիռ վերին տեսչութեան. քանզի յաւուր հինգշաբաթւոյ ելանէ դարբին ի խորոց երկրի՝ բաղխէ սատանայպէս զնորոգեալ շղթայն, որ ի նորոյ զօրանայ. եւ ինքն անհետ լինի նոյնժամայն։ Այս լինի տարի ի տարւոջէ, եւ անզերծ մնայ ի կապանս իւր Ամիրան„։

## ՀԱՏՈՒԱԾ Ե·

### Զրոյց ու աւանդապատում :

Ասկից նախընթաց հատուածը առջեւնիս մեր հին երգերուն պատմական նիւթը բացաւ: Աս երգերէն հանուած պատմական նիւթը՝ որչափ բանաստեղծական կապերէն ազատած ու զարդերէն զատուած դընենք, ի վերայ այսր ամենայնի՝ ըստ ինքեան ի պաշտօնէ պատմագրի աւանդուած պատմութիւնն (հաւատար գոլով այլոց) աւելի ծանրակշիռ է: Ինչ համեմատութիւն որ պատմագրութենէ աւանդուած ու երգերէն հանուած պատմականին մէջ կայ՝ նոյնն երգերէն հանուած ու զրոյցներէն առնուած պատմականին մէջ կը կրկնուի: Այս ինքն՝ հին զրոյցներն երբեք հին երգերուն քով պատմական յառաջադասութիւն չեն կրնար ունենալ: Աս վերջիններն իրենց սկզբնական կերպին պահպանութեան երաշխաւորութիւնը հետերնին ունեցած են: Որովհետեւ ասոնք հաստատուն կերպարանք մ'ունին ու անով՝ ինչպէս որ առջիններէն կ'առնուին, այնպէս ալ վերջիններուն կը տրուին, իրենց առջի զարդը ժամանակաւ յաւելուած չիզաներ: Ասոնց հակառակ՝ զրոյցները հետզհետէ կերպարանափոխութիւններ առնելու ընդունակ են, երթալով կը զարգարուին, կամաց կամաց սկզբնական մասունքն կինալով՝ օտար մասունք կը փոխանակեն, թէ այլեւայլ ժամանակի եւ թէ այլեւայլ տեղւոյ մէջ այլեւայլ կերպարանք ու գոյն կ'առնուն: Ի վերայ այսր ամենայնի՝ զրոյցները քիչ շատ իրենց նախնական նոյնութիւնն անանկ կրնան պահել՝ ինչպէս հին շէնքի մը բարոյական նոյնութիւնը կը պահուի, թէ որ իրեն մասունքները կամաց կամաց կը փոխուին ու անոնց տեղ եկած մասունքը միշտ առջիններուն համեմատ կը զետեղուին: Ուսուի բանադատութեան (Քրէլիէ+է) կոչմանէ՝ Պատմագրութիւնը, Վիպասանութիւնն ու

Զրոյցը հնութեան տաճարին առջեւ իրարու վրայ աստիճանաւոր սանդուղ մը կը կազմեն։

Ազգային հին զրոյցներէն ալ քանի մը ճաշակներ ունինք.

1. Երայի զրոյցը՝ մեր ճանչցած զրուցաց մէջ առջի կարգը կը բռնէ։ Աս զրոյցին վրայ արդէն յառաջագոյն բառ պատահման առիթ ունեցանք խօսելու։ Ինչպէս հոն տեսանք՝ աս զրոյցը Հայաստանէն դուրս տեղական կերպարանափոխութիւն մը կրած է, որն որ քիչ մ'առաջ ըսածներնուս հաստատութիւնը կամ օրինակն է։ Աս զրոյցին յիշատակը չէ նէ՝ համոզումը ժողովրդեան մէջ քրիստոնէութեան հաստատեններն ալ դեռ կենդանի էր, եւ Ե. դարուն կէսին եկեղեցական մատենագրութիւնն անկից ծնած աւելորդապաշտ կարծեաց դէմ գրելու հարկ ունեցաւ[1]։

2. Արտաւազդայ մահուան զրոյցը նոյն առասպելախառն կարգէն է։ Եզնիկ ու Խորենացին (ինչպէս տեսանք) քիչ մը իրարմէ տարբեր զրուցելու սկսած են, իսկ Վրաց քով հեթանոս Արտաւազդայ զրոյցը Վրացի քրիստոնեայ Ամիրանայ զրոյցն եղած է։

Աս երկու զրոյցներն աս կերպարանաց մէջ աւելի Առասպել անուանելու է։ Թէ որ աս վերջին ազգային առասպելին՝ յունական առասպելաց մէջ համեմատականը (analogueը) փնտռել ուզենք՝ անտարակոյս ան է Մասեաց հրաբուխ լերան մէջ բանտուած Արտաւազդն՝ ինչ որ Կովկասեան լերան տակ խլրտող Պրոմեթէոսը, կամ յունական Տարտարոսին մէջ ճգնող Սիւսիփոսը։ Արտաւազդայ հաւատարիմ շներուն անդադար կրծումն ու միշտ մաշող եւ միշտ նորոգուող շղթաները՝ բաւական գեղեցիկ պատկերներ են։ Այսպէս Պրոմեթէոս՝ աստուածներէն կրակ գողնալուն համար՝ գոնէ 30,000 տարեկան պատժոյ կը դատապարտուի, այս ինքն՝ որ անգղ մը անդադար ցորեկը լեարդը կրծէ ու գիշերը՝ նորէն աճի որ

1 Փ. Բուզ. Գպր. Ե. Գլ. ԼԶ։ Եզնիկ, էջ 99—100։

նորէն կրծուի։ Ասանկ ալ՝ Սիւսիփոս Կորընթոսի չարագործ թագաւորը՝ թէպէտ եւ աստուածներէն՝ Տարտարոսէն ելլելու հրաման ունի, բայց Սանդարամետապետը զինք արգելած է ու պատիժ սահմանած է՝ որ Սիւսիփոս ճերմակ մարմարիոնի ժայռ մը անդադար լեռնէ մը վեր գլորէ։ Խեղճ թագաւորը ժայռը լերան գագաթը բերելուն պէս՝ աներեւոյթ ձեռք մը ահագին թնդմամբ վերէն վար կը թաւալէ ու Սիւսիփոսի աշխատութիւնը միշտ նոր կը սկսի։

3. Առասպելական կարգէն դուրս չէ Արծրունեաց ցեղին զրոյցը՝ իբրեւ թէ իրենց Հադամակերտ ոստանին մէջ նահապետութեան ժառանգ մնալուն իշխանորդին նիրհելու ատեն՝ փոփոխակի անձրեւ ու արեւ վնասելու միաբանած ըլլալով՝ արծիւ մը թեւերովը երբեմն յարկ ու երբեմն հովանի եղած ըլլայ[1]։

Բայց աւելի պատմական ու անխառն զրոյցներ են։

4. Երուանդ յաղթանդամ թագաւորին եւ իր Երուազ եղբօրն ու իրենց խարատի, խոշորագեղ արշակունի մօրը վրայ ըսուած զրոյցը[2]։ Աս զրոյցը կ՚ենթադրէ զրոյցներու շարք մը՝ որուն որ հնութեամբ քայքայած ինկած է։ Ուստի շատ հաւանական է որ աս զրուցաց շարքին նախընթաց մասերէն մէկն է՝

5. Սանատրկոյ մանկութեան վրայ պատմուած զրոյցը[3]։ Սանատրուկ թագաւորազուն տղան իր արծրունի սանուտին հետ Կորդուաց լերանց մէջէն անցնելու ատեն՝ երեք օր երեք գիշեր ձեանց մէջ կը թաղուի՝ բայց հրաշալի ճերմակ կենդանի մը երկուքն ալ ողջ առողջ կը պահէ։ Այս ինքն՝ զիրենք փընտռող խնդրակներուն սպիտակ շունը զիրենք ձեան մէջ գտնելով՝ իր տաք շնչովը կ՚արթընցընէ[4]։

1 Խորեն. Գիրք Բ. Գլ. Է։

2 Անդ. Գլ. ԼԷ։ 3 Անդ. Գլ. ԼԶ։

4 Աս դէպքը՝ որ մինչեւ հիմակ Ալպեան լերանցմէջերը կը պատահի, եւ որուն համար ալ Բեռնարդեան ըսուած

Հին զրոյցներէն՝ հիմա միայն ասոնք կրնանք ցուցընել. Թէպէտ եւ երկայնժամանակեան ազգ ու ժողովուրդ մը չէր կրնար իր բազմաթիւ ու երկայն զրոյցները չունենալ: Ասոնք չունինք, բայց իրենց երբեմն ունեցած գոյութեանը վկայութիւնն ունինք [1]:

Ինչ որ աս մեր գիտցածներուն հնութեան չափը կամ թէ ըսեմ՝ գոնէ մերձաւորական ժամանակագրութիւն մը տալ ուզենք՝ առջի զրոյցը բարձր հնութիւն մը կ'առնու Քրիստոսէ առաջ չորրորդ դարուն մէջ Պղատոնին ծանօթ ըլլալովը: Երկրորդ զրոյցը նոյն իսկ դիպուածէն շատ վերջն եղած չէ, որովհետեւ Եզնիկ աս զրոյցը հեթանոս Հայաստանին կու տայ [2]: Չորրորդ զրոյցն արդէն իր մէջն իր ժամանակագրութիւնն ունի, որովհետեւ ան հրաշալի կենդանին տափաստաններէն խաւրուած կը դնէ: Հինգերորդն՝ ինչպէս ըսինք՝ չորրորդին հետ կապուած է:

Ազգահամարը կամ ազգաբանութիւնը հին արեւելեան ազգերուն մեծ պարծանքն էր: Իւրաքանչիւր ցեղ իր նահապետէն մինչուկ ինք սերունդը ցուցընելով իր ազնուականութեան ապացոյց կու տար: Բայց աս ապացոյցը՝ որչափ որ ցեղերն ու ճիւղերը կը

շան մը տեսակ մասնաւոր կը կրթուի, Հայաստանի մէջ ալ ցանցառ բան պիտ'որ չըլլայ: Տիրան Ա. այսպիսի արկածէ մեռաւ: Ստրաբոն հին յոյն մատենագիրը Հայաստանի աշխարհագրութիւնը գրած ատեն "Կը զրցուի որ, կ'ըսէ, մարդիկ լերանց ստորոտներէն անցած ատենին՝ շատ անգամ բոլորը մէկանց լեռնէն ինկող ձիւնէն կը ծածկուին: Ճամբորդներն սաստիկ դժբախտութեան ատեն ճար մ'ունենալու համար՝ հետերնին երկայն գաւազան կ'առնուն՝ որ գուցէ դէպ ի վեր բըռնելով՝ թէ՛ շունչ առնելու ծակ բանան եւ թէ՛ անցաւորաց իրենց դժբախտութիւնն իմացընեն": (Գիրք ԺԱ. Հայաստան):

1 Ագաթանգեղ. էջ 18 եւ 658:

2 Էջ 105. "Մոլորութիւնն դիւաց խաբեաց զդիւցապաշտս Հայոց":

բազմանալէն՝ այնչափ յիշողութիւնը ծանրանալով դժուարին կ'ըլլար: Ուստի նախ ամենէն ազգաբանութիւնը միայն մանկական եղաւ, այս ինքն ամէն ցեղ միայն իր մեծաւոր սերունդը կը համրէր, բայց ատոր ալ շատութիւնը վերջապէս կը ստիպէր որ աս մանկականն ալ ընդհատ ըլլայ, այս ինքն ցեղին մէջ երեւելի անուան ծնողները միայն յիշուին կարգաւ ու աննշանները իբրեւ յիշողութեան բեռ թող տրուին: Աս տոյգ է՝ որ նոյն ազգահամարներն արեւելեան պատմագրութեան հիմը, մանաւանդ թէ ըստ մեծի մասին նոյն իսկ էութիւնն են:

Հայոց տոհմային ազգաբանութիւնն՝ ան որ իրենց ալ հին պատմագրութեան կմախքն է, զմեզ ազգային անգիր դպրութենէն գրաւորին կը հրաւիրէ:

---

Հեղինակը պատշաճ կը սեպէ հոս իբրեւ յաւելուած դնել, Նորագոյն լրագրին տարւոյս 33երորդ թուին մէջ Նորայրէ Դ. Գողթան երգ անուամբ հրատարակուած հատուածը:

Ընդուշտ հայ գրագէտներուն մեծ մասին ծանօթ է որ ազգային լրագրի մը մէջ՝ առջեւնիս, ինչպէս կ'ըսուի, "անարատ գոհար մը" գտնուեցաւ, այս ինքն՝ վեց տուն բաժնուած երգ մը, իբրեւ համբաւաւոր Գողթան երգերու նոր գտնուած մէկ կտորը: Յիշեալ լրագիրը չիդանդաղէր աս դիւցազնագիւտ բանին հանքը նշանակելու. Աս երգը, կ'ըսէ, Մատթեան աւետարանի բոլորգիր մագաղաթեայ մատենի մը վերջը գրուած է, որն որ Կարնեցի Սարգսեան Աւետիսի ընտանեաց մէջ յորդւոց յորդի իբրեւ սրբազան հայրենական ժառանգութիւն մը պահուած էր: Թէ ինչ խմբագիրն իր աչօք նոյնը կարդացեր է, բացայայտ ըսած չէ:

Աս գիւտը՝ որչափ գեղեցիկ ու հրապուրիչ անուամբ առջեւնիս ելլէ, նախ պիտ'որ փորձուի որ արդեօք գոհա՞ր է՝ թէ ապակի: Հրատարակիչն ատոր հարազատութեանը վրայ՝ իր գոնէ բոլոր երաշխաւորու-

թիւնը գնելու յօժար չէ, ու խոհեմութեամբ խընդիրը "բանասիրաց խելամտութեանն ու քննութեանը կը ձգէ": Սկզբնական ստացիչն ալ՝ իր անյիշատակ ժառանգութեամբ ունեցած ստացուածին ճիշդ պատասխանատու չիբռնուիր։ Ուստի աս խնդրոյն մէջ՝ ուրիշ ապահով ճամբայ չիմնար, բայց եթէ ներքին վկայութեան դիմել եւ նոյն իսկ խնդրոյ տակ դրընուած երգը երդուընցընելով հարցընել թէ "ինքն իրեն համար ի՞նչ կ'ըսէ":

Հրատարակիչն աղէկ դուշակած ըսած է որ "իր լուրը քննութեան կամ անհաւանութեան առիթ պիտի ըլլայ": Մենք կը յաւելունք թէ աս երկուքը՝ խնդրոյս մէջ իրարու շատ մօտ են, որովհետեւ շատ կարճ քննութիւն մը բաւական է անմիջապէս մըշտընջենաւոր անհաւանութիւն մը բերելու։ Այս ինքն՝ թէ աս երգը Ա. Մեր նախնեացմէ ունեցած Գողթան երգերուն մասը չէ, Բ. Նաեւ ոչ հիներէն՝ անանց նմանութեամբ շինուած է, հապա Գ. Նոր ու բոլորովին նոր (նոյն երգերուն վրայ եղած վերջին զննութիւններէն ետքը), ան ալ Դ. Շատ անյաջող ձեռքէ մը նմանելով երգ մըն է։

Աս վերջի երգիս մէջ գտնուած բանասիրական, բանաստեղծական ու պատմական հակառութիւններն ու անպատեհութիւնները կ'արդարացընեն աս ցաւալի դատաստանը։

1. Բանասիրականին կողմանէ՝ աս երգը մեր ունեցած հարազատ Գողթան երգին մասերէն ընտրելու շատ դժուարութիւն կ'ունենայինք՝ թէ որ ասիկա շինողը գիտնար ան այնչափ անգամ ծանուցուած, բայց դեռ աղէկ միտք չառնուած՝ էական զանազանութիւնը՝ որն որ հայերէն գրաւոր լեզուն ժամանակագրօրէն երկու տիրող բարբառոյ (դիալէկտի) կը բաժնէ, մէյ մը հինգերորդ դարուն կէսէն դէպ ի վեր, մէյ մ'ալ հինգերորդ դարուն կէսէն դէպ ի վար։

Բայց Նոր Գողթան երգիչը կամ դեռ չէ ճանչցած եւ կամ չէ թափանցած տօ հայերէն բանաստեղծութեան պատմութեան մէջ դարձագլուխ մը շինող գիւտին։ Ինչպէս ուրիշ անգամ ըսած ենք՝ ունեցած հարազատ Գողթան երգերնիս ամէնն ալ առանց պերճանքի բացառութեան մը՝ ըստ ամենայն հայեցման՝ հինգերորդ դարուն առջի կէսէն վեր տիրող գրաւոր լեզուն կը խօսին։ Աստ հակառակ՝ Նոր Գողթան երգին լեզուն ըստ գոյացութեան նոյն դարուն երկրորդ կէսէն սկսեալ տիրող եղած լեզուն է։ Աս կը ցուցընեն բոլոր գրուածոյն մէջ Ա. խօսքին տարրները (կամ բառերը). օրինակի աղագաւ՝ վերաշարժեալ, է վեր (=ի վերայ), ձառաղանիստ, կենադրան, ջրաձարկեալ, խորտակաղեալ, նաղեալ, մշտադալարն, փողփողեալ (եղջերուաքաղ բառին շէնքը. որն որ Խորենացւոյն քաղուածոյ [գմոնուկին Արտաւազդ] բանաձեւին վրայ շինուած է) եւ ուրիշ խել մը նուաղ ապահով ու կասկածաւոր բառեր եւ այլն։ Բ. Դասաւորութիւնք. օրինակի աղագաւ՝ մշտադալարն յեռեալ կեանս, երկանին կողեալ շղթայք, (փոխանակ նախնական կարգով ըսելու՝ ձգեալ մշտադալարն կեանս եւ այլն։)

Բայց Նոր Գողթան երգն աւելի մերձաւորապէս իր ժամանակը կը ցուցընէ։ Իր լեզուն չէ թէ միայն հինգերորդ դարու երկրորդ կէսին լեզուն է, հապա նաեւ մեր ատեններուն նորաձեւ լեզուին կնիքը վրան ունի։ Նախ աս կը ցուցընեն բառերը. կամ իբրեւ մեզի հասարակ եղած բայց հիներուն անլուր բառ, ինչպէս առոեղջ. կամ հիներէն տարբեր նոր նշանակութեամբ, ինչպէս՝ ցեղազանձ (իբրեւ ցեղչցեհ կամ վէհ, ուր որ հիներուն քով՝ ցեղչցկանեանը հրոյ պարծող կը նշանակէ), ծնգաւէր (իբրեւ ցանկաւէր, ուր որ հիներուն քով՝ զգաստաւէր կը նշանակէ). կամ նորերուն սիրական բառերու գործածութիւնք, որոնք նոյն կերպով կամ նոյն յաճախութեամբ հիներուն քով գոր-

ծածուած չեն, ինչպէս՝ դժողք (դեւ), դարձեալ՝ դժոխքն (որն որ Նորերուն շատ գործածական է, Գ. Մակաբայեցւոց, Ե. 22. սխալ օրինակէ մը առած, ուր որ ուղիղ օրինակը՝ ժողքն կ՚ըսէ, չէ թէ դժոխքն) եւ այլն: Ասկից զատ՝ անշնորհք խոնարհումներ, նախդիրներ, յօդեր պակաս չեն, ինչպէս՝ անիծեաց (= անէծ), հարել (= հարկանել)․ յորս հեծցէս, (որն որ Խորենացւոյն քով է՝ յորս հեծցես, բայց հոս վանկ մ՚աւելցնելու համար եղած է՝ յորս), է յերկինս (= յերկինս): Վերջապէս մեր հեթանոս Գողթան երգիչներուն բերանը՝ մեզի աստուածաշունչ գրքէն ընտանի եղած երբայական ոճն ալ կը տրուի՝ ըսել կոխարդելով կոխարդեաց:

Իսկ դասաւորութեան կողմանէ՝ աս Գողթան երգը յառաջ մինչեւ ցգլուխ նորախօս է, եւ ըստ մեծի մասին բառերն անանկ անբնական շարուած են, ինչպէս սովորաբար Նորերն ոտանաւորի մէջ կը շարեն, զոր օրինակ՝ Աշտանակաց խանաց զարմ․ Զի ող խորհի դայ վախճան, ըՆէ եղանէ Արտաւազդ․ Արգելին մի ըլլայս մտեանել, Խորասանդեալ դեւս դժողքն (եւ ոչ՝ դժոխքը), Զինչահճացին եւ ըլլին (եւ ոչ ըլլինն), Որսալ ըլկամբէն Գինաց․ Ցամքէքին Ջխաճարբեալ (փոխանակ ըսելու՝ ամեհեան ձիաւարեալ) եւ այլն:

Զ. Նա նոր Գողթան երգը չէ թէ միայն հին Գողթան երգերուն բանաստեղծական շնորհներն զրուցել չէ կրցած, հապա եւ ոչ նոյն երգերուն քանաստեղծական համեմատն ունի: Աւելորդ է հոս հարազատ Գողթան երգերուն արուեստաւոր յօրինուածոյն վրայ խօսիլ, որովհետեւ արդէն լուսագրոյս մէջ բաւական խօսած ենք: Անոնց մէջ գտնուած անկեղծ արուեստն աս մեր Գողթան երգ ըլլալ ուզող երգին մէջ չի գըտնուիր: Ո՞ւր են ան դժուարինց ու երկայն տարուած այլաբանութիւնները, կենդանի պատկերները, ներդաշնակաւոր չափականութիւնն ու համեմատականու-

թիւնը։ Հոս ամենայն ինչ դիւրիմաց, ցուրտ, անարուեստ, անչափակից ու հետեւակ (pédantesque), բոլոր խօսքերն աւելի տրամաբանական քան թէ բանաստեղծական կարգաւ զետեղուած, վերջապէս ան հին երգերուն կրակէն՝ եւ ոչ կայծ մը ասոր մէջ կը շողայ, ի բաց առեալ ան կտորներն՝ որոնք Խորենացւոյն Բ. Գրքին ԿԱ. գլխէն առնուած ու տեղ տեղ զետեղուած են։

Բայց բոլորովին ինչ զինք կը մատնէ աս նոր հին բանաստեղծը՝ երբ որ աս վեց տուն երգին մէջ երկու անգամ կ'ըսէ “Աշխարհակալ կանանց զարմ„։ Հին Գողթան երգերն երբեք ասանկ պարզ եղանակաւ բացէ ի բաց Աշդահակայ անունը չեն տար, ու Աշդահակայ զարմը միշտ կենդանի այլաբանութեամբ մը՝ Վիշապք կամ Վիշապազունք կ'անուանեն։ Թէ որ Գողթան երգերն աս բաներս պատմելու տեղեն՝ այսպէս բացայայտ Աշդահակայ անունը յիշած ըլլային, Խորենացին Աշդահակայ պատմութիւնն ու անոր զարմին Հայաստան բերուիլը պատմելէն ետքը՝ Գողթան երգէն աս բանիս հաստատութեան համար վկայութիւն բերելու տեղեն՝ ան աստիճան դժուարութեան մէջ չէր մտներ, նոյն երգին այլաբանութիւնը մեկնելու, այս ինքն՝ ցուցընելու որ երգին “Վիշապազունք„ ըսածն Աշդահակայ զարմն է, եւ կամ մինակ աս այլաբանական տեղը չէր բերեր[1]։

Նոր Գողթան երգիչը Արտաշիսի համար՝ “Հազարք էին նորա հարճք„ կ'ըսէ, որն որ անտարակոյս Երգոց երգոյն ծանօթ խօսքէն միտքն ինկած է։ Նոյնպէս Արտաշիսի “դիցն կամաւ ի յերկինս վերակարգելն„ ալ նոյն ատենուան Հայոց կրօնական աւանդութիւններուն համեմատ չ'երեւար։

3. Ընդհանրապէս՝ բանասիրական ու բանաստեղծական անպատեհութիւններէն աւելի նիւթական ու

1 Խորէն. Գիրք Ա. Գլ. Լ։

շօշափելի են պատմական անպատեհութիւնները։ Խորենացին Արտաւազդայ մոլեգնութեան վրայ խօսելով՝ կը կարծուի, կ'ըսէ, որ Աշդահակայ զարմին կանայքը զինք կախարդած ըլլան, եւ ատոր՝ երգէն վկայութիւն մը բերէ ըսելով, "Եւ զայս նոյն երգիչքն յառասպելին առեն այսպէս, եթէ Վիշապազունք գողացան զմանուկն Արտաւազդ եւ դեւ փոխանակ եդին",,։ Ուրեմն Խորենացին Արտաւազդայ կախարդուած ըլլալուն վկայութիւնը հազիւ աս այլաբանական "դեւ փոխանակ եդին",, խօսքէն կը հանէ [1]։ Բայց Նոր Գողթան երգը ահա բացայայտ, առանց այլաբանութեան՝ խոշոր կերպով մը դրած է "Աժդահակայ կանանց զարմ, զԱրտաւազդ մանուկ մատաղ կախարդելով կախարդեաց",,։ Մեր պատմութեան հայրը աս անմիջապէս հետեւող տունն անկարելի էր որ չտեսնէր, եւ աւելի անկարելի՝ որ չգործածէր։

Վրէժնութեան առնուած երգին բովանդակ վերցերորդ ու վերջին տունը՝ նոյն երգը բոլորովին իր վերաթափ մերկութեանը մէջ կը ցուցընէ։ Ինչպէս լռագրոյս մէջ հին երգերնուս վրայ հրատարակուած վերջին հատուածոյն մէջ բացայայտ ըսած էինք, Գողթան երգիչները չէն՝ որ կը պատմեն Ա. Արտաւազդայ երկաթի շղթայով կապուիլը, Բ. Երկու շներուն՝ շղթաներն անդադար կրծելը, Գ. Արտաւազդայ ելլել ուզելը՝ որ աշխարհքս վերջացընէ, Դ. Դարբնաց կռանահարութեան ձայնէն շղթաներուն զօրանալը, հապա Խորենացին, որ թէ Գողթան երգերը լսած էր եւ թէ իր ժամանակին սովորութիւնները գիտէր, վերոյիշեալ չորս պարագաները պատմելու ատեն՝ չէ թէ հին երգը յառաջ կը բերէր, հապա (նաեւ Եզնիկէն յիշուած) ռամկական զրոյց մը կը յաւելու՝ որոշակի ըսելով իսկզբան "Զրուցեն զսմանէ պառաւունք",, (չէ թէ Թուելեացն երգք կամ երգիչք

1 Խորէն. Գիրք Բ. Գլ. ԿԱ։

գինաւէտ գաւառին Գողթան)[1] ։ Բայց Նոր Գողթան երգոյն մէջ զրոյցն երգին հետ խառնուելով՝ ան չորս պարագաներն ալ մէկիկ մէկիկ կը պատմէ ըսելով՝

‘‘Երկաթի կապեալ շղթայք
Սատոկապատիժ յայրի անդ,
Ղանց երկուց հանապազօր
Զշղթայն կրծել տատանակեր.
Զի աշխարհի այս վախճան
Թէ ելանէ Արտաւազդ։
Բախեցէք, գործինք, կռանս.
Ըզաւլն հարել կոփել կռանս.
Զօրացին շղթայք Արտաւազդայ,,։

Ինչպէս մինչուկ հիմա ըսուածներէն կ'երեւայ, աս երգը՝ որ իրեն հիմ ու նիւթ առած է Խորենացւոյն վերոյիշեալ գլուխը, միայն նոյն գլխէն կը դատապարտուի։ Որչափ ալ ջանք եղած է՝ աս պատմագրին նոյն իսկ իր կողմանէ գործածած կամայական բառերն ու խօսքերը պահել, ի վերայ այսր ամենայնի նոյն գլխոյն հետ ունեցած միաբանութիւնը՝ միշտ աներեւոյթ, իսկ տարաձայնութիւնն՝ իրական եղած է։ Բայց աս քննութեամբ երգոյն հետ՝ երգիչն ալ, ով որ է նէ, դատել չենք ուզեր։ Այո՝ կեղծիք ու խաբէութիւն՝ որ եւ իցէ տեսակ ճշմարտութեան համար գործածելը՝ միշտ դատապարտելի ու նոյն ճշմարտութեան վնասակար է. բայց մենք կ'ուզենք հաւատալ որ աս երգոյս անծանօթ հեղինակին նպատակը՝ չէ թէ ուսումնական հասարակութիւնը խաբել էր, հապա ուսումնական հասարակութիւնը փորձել։ Բայց ինչ որ ըլլայ՝ ըլլայ, իրաւամբք կրնայ նոյն հասարակութիւնը տրտնջել՝ որ պարապ տեղ իր մտադրութիւնը կը գրաւի, եւ կամ փոխանակ անմիջապէս սորվելու, նախ կը խաբուի՝ որ ետքը սորվի։

1 Անդ՝ էջ 286։